

# Գ Ա Ր Ո Ւ Ն

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*

Արևը շրջում է շոյելով
Դաշտերի զգեստներն սպիտակ,
Սպիտակ ծաղիկներ են ծաղկում
Ջերմացած մայր հողի կրծքի տակ:

— Մայրի՛կ, տե՛ս, բնության կանչերը
Ամեն տեղ են այսօր արթնացել,
Ջրերի աչքերի պես մաքուր,
Երազկոտ է երկինքը դարձել:

— Մայրի՛կ, տե՛ս, ծաղկում են դաշտերը,
Ու չորս կողմ գարնան բույրն է փռվում,
Ասես թե արևի հետ մեկտեղ
Դաշտերի միջով դու ես քայլում:

*Նկ. ԱԼԻԿ ՍԻՄՈՆՅԱՆԻ*



# ՆՈՎԵԼ ՄՈՐՍ ՄԱՍԻՆ

*ՌՈԲԵՐՏ ԲԱԲԼՈՅԱՆ*

*Նկ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ԲՈՅԱՋՅԱՆԻ*

Մեր բազմազավակ ընտանիքում ամենից ուշ պառկում էր քնելու մայրս: Նա քրթմնջալով հավաքում էր սեղանի վրա բաց թողած գիրքը, թեյի բաժակը, լավաշի մնացորդը, մոռացած թանաքամանը, հետո թաց լաթով սրբում-հավաքում էր սեղանի փշրանքները և գնում խոհանոց: Խոհանոցում ստուգում էր ծորակները, գազը: Հետո պատշգամբի պարանից կախում էր ձեռքի թաց լաթը, ծածկում պատուհանի փեղկերը և այս բոլորից հետո միայն պոկում նախասենյակի պատից կախված օրացույցի թերթիկը, ծայրից ծայր ուշադիր կարդում, ապա լույսը հանգցնում ու մտնում իր ննջարանը: Հաճախ օրացույցի թերթիկը մայրս թողնում էր հացի ամանի վրա, որ գուցե երեխաները առավոտյան կարդան: Մայրս սիրում էր կարդացածը բարձրաձայն կրկնել. «Այսօր Պուշկինի ծննդյան օրն է», «վաղը տարվա ամենաերկար օրն է լինելու»:

Քնելուց առաջ նա միշտ հետևում էր, որ նախասենյակի լույսը վառ մնա. երեխաներից որևէ մեկը գուցե գիշերը ուզենա... ջուր խմել: Մեկնից ոչ ոք՝ ո՛չ ամենամեծը, ո՛չ էլ մանավանդ ամենափոքրը, իրավունք չունեինք «հերթապահող» լույսը հանգցնել: Դա անխախտելի կարգ էր, մեր ընտանիքի ավանդույթը:

Այդ օրը երեկոյան ռադիոյով հաղորդվելու էր իմ ակնարկը ջուլհակուհու մասին: Որոշել էինք ամբողջ ընտանիքով հաղորդումը լսել: Լսեցինք, բայց ոչ այնպես, ինչպես հինգ տարի առաջ լսում էինք իմ առաջին պատմվածքը և ցնծում: Ճիշտ է, քույրերս մոտեցան և այտերս համբուրեցին, փոքր եղբայրս ժպտալով ձեռքը մեկնեց. «Շնորհավորում եմ», իսկ երբեք ոչ մի բանի վրա չզարմացող միջնեկ եղբայրս, հայելու առաջ մազերն հարդարելով, չէի ասի, թե առանց հիմնավորման, արձանագրեց. «Ամենալավ հաղորդավարուհին էր կարդում»: Բայց, միևնույն է, տոնի վեր չածվեց:

— Տարիներ առաջ դու պատմվածք գրեցիր տատիկի մասին: Այսօր էլ ջուլհակուհու մասին լսեցինք: Իսկ մայրիկի մասին, մեր մայրիկի մասին ե՞րբ ես գրելու,— հանկարծ հարցրեց Անահիտը, երբ մայրիկը դուրս գնաց:

Ես լուռ կռացա հատակին ընկած լոբու հատիկը գետնից վերցնելու:

...Ե՞րբ եմ գրելու մորս մասին: Մեր մայրիկի մասին:

Մի օր, երբ մայրիկը գնացել էր շուկա, հավաքվեց «հինգ մատների» խորհուրդը: («Հինգ մատիս պես բոլորից հավասար սիրում եմ: Որից էլ որ բան պատահի՝

սիրտս կցավի»,— ասում էր մայրըս և մեկ «իր հինգ մատները» անվանում): Մտածում էինք, թե ինչ է յուրաքանչյուրիս համար մեր մայրիկը:

— Մայրիկից քաղցր աշխարհում ոչինչ չկա,— ասաց ճկույթ Անահիտը:

— Մայրիկը ուտելիք չէ, որ քաղցր լինի,— ուղղեց Զորիկը:

— Մեծ նկարիչ լինեի՝ նկարեի մայրիկին,— ասաց մատնեմատ Դուստրիկը:

— Մեծ գրող լինեի՝ վեպ գրեի մայրիկի մասին,— ասաց միջնակը (ոչ թե միջնակ եղբայրը, այլ միջնամատը, այսինքն՝ Մաթոսը):

Ներկա էր քեռի Ալեքսանը՝ մեր ազգի ամենատարիքովը, ամենաալեհերն ու ամենաիմաստունը: Նա սովորաբար որևէ հայտնի առածով էր իր միտքը արտահայտում, կամ էլ, եթե հարմար առած չէր գտնում, տեղնուտեղը ինքն էր հորինում:

— Մայրը տան տանիքն է, հայրը՝ պատերը,— դանդաղ ու վճռական ասաց քեռին:

Ապա քիչ հետո.

— Մոր անունը՝ աղջկա օժիտըն է,— քույրերիս նայելով շարունակեց քեռի Ալեքսանը:

Քեռի Ալեքսանը միշտ նույն զինվորական կապույտ բլուզն էր հագնում և, չնայած ուղիղ ու հըպարտ քայլվածքին, առանց շան մուրթով ձեռնափայտի տնից դուրս չէր գալիս: Նա չորս տղա և երեք աղջիկ ուներ (կինը վերջերս էր մահացել), բայց մենակ էր ապրում: Զինվորական տաբատի գրպանում նա միշտ կոնֆետ էր ունենում իր բազմաթիվ թոռների և հուրիշ երեխաների համար: Քեռի Ալեքսանը մեկ մի-մի կոնֆետ տվեց ու ասաց.

— Թե մոր համար որդին ափի մեջ ձվածեղ էլ անի, միևնույն է՝ պարտք կմնա:

Մարտի 7-ին, երբ մայրս խոհանոցում ընթրիք էր պատրաստում, ես մտա նրա ննջարանը, նստեցի չոր սնդուկի վրա, որի մեջ նա պահում էր մեր բոլորի բարուրաշորերը, շապիկները, տիկնիկները և այլ խաղալիքները, մաքուր թուղթ վերցրեցի, խոր շունչ քաշեցի, կարծես ամբողջ կյանքի համար օդ էի հավաքում, և գրեցի. «Մամա»: Տողերը հետևեցին մեկը մյուսին...

Մարտի 8-ին, առավոտյան, քույրերիս և եղբայրներիս կարդացի գրածիս սևագիր տարբերակը:

— Լավ է, բայց քիչ է,— ասաց մի եղբայրս:

— Քիչ է, բայց լավ է,— ավելացրեց մյուսը:

Հիշեցի քեռի Ալեքսանի խոսքերը և գրածս շարունակեցի.

«Կարիքի մեջ հայր է,
Պայքարներում՝ եղբայր,
Ցմահ ընկեր է
Եվ հավերժ մայր»:

Գրածս ծրարի մեջ դրած հանձնեցի մորս և հինգ կարմիր վարդ՝ իր սիրած ծաղիկները, ամեն կավակից մի-մի հատ: Նա ծաղիկները վերցրեց, մոտեցրեց դեմքին, և ինձ չնայելով, գնաց ծաղկամանի մեջ ջուր լցնելու: Ծրարին ոչ մի ուշադրություն:

Անցան օրեր, շաբաթներ... Տարիներ անցան:

Մի օր քնելուց առաջ ես կանգնեցի մայրիկիս դիմաց.

— Մա՛, խնդրում եմ, ասա ինչո՞ւ չես ուզում կարդալ գրածս:

Նա չպատասխանեց: Նեղացել էր: Ուրեմն, ինչ-որ բան ճիշտ չէի արել:

...Ընկերս՝ Ռազմիկը, տարիներ շարունակ հրատարակչությունում օրացույցներ էր կազմում: Գրածս, որ շարունակել, նովել էի դարձրել, վերցրի տարա նրան, հավանեց, ընդունեց և զետեղեց օրացույցում:

...Օրացույցը պատից կախեցի: Գիտեի, որ կգա հոկտեմբերի 9-ը, և գիշերը, քնելուց առաջ, մայրս կպոկի օրացույցի թերթիկը և կըկարդա. «Արևը ծագելու է ժամը այսքանին, լուսինը՝ այնքանին»: Հետո շուռ կտա էջը և...

Նրան, որ կյանք է մեզ պարգևում
Եվ չարչարանքներով մեծացնում
է մեզ,
Նրան, ում ամբողջ կյանքում լուռ
թե բարձրաձայն
Ես մայր եմ ասում,
Նրանն է իմ շունչն առաջին ու
տողն առաջին,
Եվ տողը վերջին, և խոսքը
վերջին...

Կկարդա և կհասկանա,՝ որ այս իր մասին է: Կհասկանա և կների բոլոր մեղքերս: Չի պատռի, չի գցի: Հացի ամանի վրա էլ չի դնի, որ երեխաները չկեղտոտեն թերթիկը: Իր վառ գույներով խալաթի գրպանը կդնի և միայն ամենամոտ մարդկանց, ամենատոնական օրերին, առանց շտապելու և գուցե արցունքներն աչքերին, կկարդա...

Մայրս չապրեց մինչև այդ օրը:



# ՎԵՐԱԴԱՐՁ

ԷԴՎԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Անունս Արամ է: Բայց դպրոցում ինձ Կյաժ են ասում: Մազերս շեկ են: Բոլորինը սև է, մենակ իմն է շեկ: Դրանով է, որ աչքի եմ ընկնում: Ոչ թե սովորելով: Ինչպես բոլորը, այնպես էլ ես: Հո գերազանցիկ չե՞մ, որ լավ սովորեմ: Ի՞նչ եմ անում: Ոչինչ, ձանձրանում եմ: Ձանձրանում եմ և՛ դպրոցում, և՛ տանը: Դպրոցում դասեր են հարցնում, տանը հարցնում են դասերի մասին: Կարծես դրանից դուրս աշխարհ գոյություն չունի:

Հայրս լավ մարդ է: Ասում են, մի քիչ էլ ինձ նման է: Նա՞ է ինձ նման, թե՞ ես՝ իրեն, չգիտեմ: Ինչ-որ բանով իրար նման ենք: Ասենք, ուղիղ քթով, շեկ մազերով, աչքերի դրվածքով և էլի ինչ-որ բաներով: Այդ արդեն ես չեմ ասում, այլ ծանոթներն ու բարեկամները: Եվ ինչո՞ւ են ուզում անպայման շատ նմանություն գտնել, չեմ հասկանում: Նա ինձ նման չի, «դինջ» մարդ է: Ամեն օր նույն ժամին գնում է աշխատանքի, ամեն օր նույն ժամին գալիս է աշխատանքից: Ամեն օր նույն ժամին հարցնում է. դասերդ ինչպե՞ս են: Եվ ստանում է նույն պատասխանը. լավ են: Ամեն օր նույն ժամին ճաշում է, թերթ կարդում, նստում գրելու: Ժուռնալիստ է: Թերթերից մեկում գրական աշխատող է: Նույնիսկ բաժնի վարիչ չի: Այս ուրիշները չեն ասում, մայրս է ասում:

Մայրս հորս հակապատկերն է: Բնավորությամբ ավելի շատ ինձ է նման: Մի բան որ մտածեց, մեռած բան է, որ չանի: Անում է ու հետո զղջում: Անցյալ անգամ վերցրել ամբողջ ռոճիկը տվել էր մի զգեստի: Երբ հայրս ասաց, որ լավ չէ, վիրավորվեց: Դժգոհեց: Բայց հետո խոստովանեց, որ հայրս ճիշտ է: Նա էլ է շուտ ձանձրանում. աշխատանքից, ընկերներից, նույնիսկ տնից: Սիրում է հեռախոսով երկար խոսել: Երբ ճաշն ուշացնելու կամ որևէ այլ բանի համար հայրս դիտողություն է անում, մայրս վրդովվում է և ասում, որ ինքն էլ է աշխատում, որ իրենք հավասար են: Ու հայրս ստիպված է լինում քթի տակ փնթփնթալ. կնոջը, որ հավասարություն տվեցիր, հետո պիտի հավասարություն խնդրես:

Այդ օրը երկու հատ «երկուս» էի ստացել. աշխարհագրությունից ու հանրահաշվից: Գիտեի, որ երեկոյան տանը պատասխան

պիտի տամ: Եվ այս բոլորից ազատվելու մի ճար կար միայն. փախչել տնից: Մտածեցի ու արեցի: Վերցրեցի հավաքածս փողը, հագա բաճկոնս, որ տաք էր, ու դուրս եկա: Մեկ ուզեցի գնալ Տիգրանի մոտ, նրան էլ համոզել, որ փախչի, մեկ էլ մտածեցի, որ նա այսօր «վատ» չի ստացել, չի գա:

Բայց, ճիշտն ասած, ինձ այդ «երկուսները» չստիպեցին փախչել: Երեկոյան կգա հայրս ու կհարցնի. դասերդ ո՞նց են, ասես հիվանդին է հարցնում: Իսկ ես չէի կարող ասել՝ լավ են: Զզվել էի խաբելուց:

Երբ «երկուս» էի ստանում (դա հաճախ էր պատահում), հայրս ասում էր. դուք ամեն ինչ ունեք՝ և՛ ուտելիք, և՛ հագուստ, և՛ ժամանակ: Հապա մենք ի՞նչ անենք, երբ պատերազմի ծանր օրերին սոված-ծարավ դպրոց էինք գնում:

Մեր ուսուցիչներն էլ նույնն էին ասում: Մենք դժվար ենք ապրել, դուք՝ հեշտ: Նույնն էր ասում հայոց լեզվի ուսուցիչը: Նրա մազերը արդեն ճերմակ էին և բերանի անկյուններում խոր կնճիռներ կային, երկու փակագծերի նման, որոնք իրենց մեջ էին առնում նրա ժպիտը: Նա տխուր էր ժպտում, ասես փակագծի մեջ: Մասնակցել էր պատերազմին, ծանր վիրավորվել: Ասում են, մինչև հիմա էլ սրտի մոտ բեկոր է մնացել: Նրա աջ ձեռքի երկու մատները կտրված են:

«Մենք,— ասում էր նա,— պատերազմի սերունդ ենք: Պարծենում ենք ոչ թե մեր կրած նեղությամբ, քաղցով, դժվարությամբ: Մենք կյանքում նպատակ ունեինք, որին ուզում էինք հասնել: Դրա համար էլ սովորում էինք: Ես հինգ մատիս պես դասերս սովորած էի դպրոց գնում, հինգ մատիս պես...» Եվ նա բարձրացնում էր իր կիսատ ձեռքը: Դասարանը ծիծաղում էր: Նա կարծում էր, թե իր ասածի վրա են ծիծաղում: Նստում էր, գլուխն առնում ձեռքերի մեջ ու տնքում. ի՞նչ սերունդ է աճում, ի՞նչ սերունդ...

Երբ գնացք նստեցի, ուրախ էի, շատ ուրախ: Չէի մտածում մորս, հորս, ընկերներիս, ոչ մի բանի մասին: Ուզում էի միայն փախչել:

Վագոնում մարդիկ շատ էին: Մի կին նույնիսկ փորձեց իմանալ, թե ով եմ, ուր եմ գնում: Գնացի մի ուրիշ վագոն:

Երբ Լենինականի կայարանում գնացքից իջա, դարձյալ ոչնչի մասին չէի մտածում: Լավ է այսպես: Ոչ ոք ինձ չի ճանաչում: Ես ոչ ոքի չեմ ճանաչում: Ուր ցանկանամ՝ կգնամ, ինչ ուզենամ՝ կանեմ:

Քայլեցի փողոցով: Բոլորը ինչ-որ տեղ էին շտապում: Մտա սրճարան: Խմեցի սուրճ, մի կարկանդակ վերցրեցի: Նորից քայլեցի փողոցով: Ո՞ւր գնալ: Մտա մի խանութ, երկրորդը... Դրանից էլ ձանձրացա: Արդեն մոտենում էր երեկոն: Մտա ճաշարան: Մատուցողը ինձ խեթ-խեթ նայեց: «Փող ունե՞ս»,—ասես մտովի հարցրեց նա: Տվեցի, ինչ որ մոտս կար: Դրսում արդեն մութ էր: Այստեղ էր, որ անհանգստացա: Ո՞ւր գնամ, որտե՞ղ մնամ: Մի մեծ քաղաք ու ոչ մի ծանոթ: Նայեցի հրապարակի մեծ շենքին. «Հյուրանոց Լենինական», բայց այլևս ո՛չ փող ունեի, ո՛չ էլ կհամարձակվեի ներս մտնել:

Բռնեցի մի անծանոթ փողոց ու գնացի: Դրսում արդեն հատուկենտ մարդիկ էին հանդիպում: Տեսնես հայրս ու մայրս հիմա ի՞նչ են անում: Երևի փնտրում են ինձ: Երևի միլիցիա են կանչ տվել...

Մտա քաղաքային պուրակ, նստեցի: Քունս տանում էր: Աչքիս առաջ էր իմ մահճակալի փափուկ բարձը, տաք վերմակը: Մրսում էի: Բարձրացրի բաճկոնիս օձիքը: Անսպասելի թեթևություն զգացի: Նայեցի շուրջս: Այս որտե՞ղ եմ: Տները բարձր են, շատ բարձր, փողոցները լայն: Շատ ուժեղ տաքացնում է արևը: Քայլում եմ փողոցից փողոց, նայում տներին, խանութներին, տրամվայներին, տրոլեյբուսներին: Բայց այս ի՞նչ բան է. ոչ մի տեղ մարդ չկա, դատարկություն է: Մենակության զգացումը ճնշում է ինձ: Շունչս կտրվում է: Հե՛յ, գոռում եմ, ո՞վ կա: Ոչ մի պատասխան: Բա մերոնք ո՞ւր են՝ ծնողներս, ուսուցիչները, ընկերներս... Ոչ ոք: Սարսափելի լռություն է, սարսափելի ամայություն:

Սարսափահար վեր թռա: Ինձ թվաց, թե երազիս շարունակությունն է: Շուրջս ամայի էր ու մութ: Դիմացս կանգնած էր միլիցիոները:

— Գնանք,— ասաց:

Միլիցիատանը ամեն ինչ պատմեցի, ոչինչ չթաքցրեցի: Երազը ինձ հուսահատեցրել էր: Եվ անծանոթ քաղաքի անտարբերությունը: Ինձ թվում էր, թե ես այլևս չեմ տեսնելու հորս, մորս, մեր տունը:

— Լա՛վ, լա՛վ,— ասաց միլիցիոները,— քնիր, վաղը մի բան կմտածենք:— Իսկ ես քնել չէի ուզում: Վախենում էի երազից: Վախենում էի մենակությունից:

Մյուս օրը ինձ տուն բերեցին:

Երբ դուռը բացվեց, մայրս արցունքն աչքերին, դեպի ինձ նետվեց: Նրան երբեք այդպես չէի տեսել: Հայրս դանդաղ տեղից վեր կացավ, ուղղեց ակնոցը: «Եկա՞ր»,— ասաց ու էլ ոչ մի խոսք: Թվում էր, թե հանգիստ է, բայց կանգնելու ձևը, հայացքը, ձայնը ասում էին, որ այդպես չէ: Ո՛չ, նա «դինջ» չի, ո՛չ, նա տանջվել է: Մայրս՝ նույնպես: Նրանք ամբողջ գիշեր չեն քնել:

Հայրս խառնեց մազերս:

— Չես սառել,— ասաց:

Ուզում էր գլուխս շոյել: Եվ ոչ թե այն բանի համար, որ տնից փախել եմ, այլ նրա համար, որ իմ աչքերում արցունքներ տեսավ: Նա հասկացավ ինձ: «Մինչև չկորցնես՝ չես ափսոսի»,— ասաց նա: Ես էլ նրան հասկացա: Եվ, սատանան տանի, մենք որքա՞ն ենք իրար նման: Ո՛չ, ո՛չ... Ո՛չ թե ուղիղ քթով, շեկ մազերով, աչքերի դրվածքով, այլ մի ուրիշ բանով, մի այնպիսի բանով, որ խոսքով չես արտահայտի:

Մայրս գրկից ինձ չէր ուզում թողնել և կրկնում էր.

— Այս ի՞նչ բերեցիր մեր գլխին, այս ի՞նչ: Գոնե հասկացա՞ր:

Եվ հետո հանկարծ խփեց ծնկանը.

— Քոռանա՛մ, սոված կլինես...

Ինձ դպրոցում ոչ ոք Արամ չի ասում, Կյաժ են ասում: Առաջ դրանով էի աչքի ընկնում: Հիմա խոսում են, թե տանից փախել եմ, մի օր Լենինականում եմ մնացել: Օտարոտի հայացքներ են նետում ինձ: Ես էլ վախով նայում եմ նրանց՝ տանից չփախածներին: Ես արդեն լավ գիտեմ, թե դա ինչ է նշանակում: Նշանակում է կորուստ, մենակության սարսափ: Եվ հիմա հասկանում եմ մերոնց: Վատը գալիս է նրանից, որ մարդիկ հաճախ չեն հասկանում իրար: Իսկ ես հասկանում եմ մորս, հորս, ընկերներիս, հասկանում եմ հայոց լեզվի ուսուցչին, որը վեր բարձրացնելով աջ ձեռքի երեք մատները, ասում է, որ դասը գիտեր հինգ մատի պես...

# ՄԱ՛ՆՈՒԿ ԳԱՐՈՒ՛Ն

*ՌԱԶՄԻԿ ԴԱՎՈՅԱՆ*

Էն հեռավոր խոր հարավից,
Խելագարված ձմռան ցավից,
Վարդաջրով լցված մի գետ,
Կռիվ տալով ափերի հետ,
Գալիս է, որ մեզ ազատի
Ու տաք գարնան բույրով պատի:

Շուրջը հազար ծաղիկ ու սեզ,
Ծիծաղելով վազում են մեզ,
Այնքան զվարթ, այնքան բարի,
Այնքան ուրախ ու գգվալի,
Որ թվում է՝ հազար տարի
Խնդությունն այդ չի դադարի:





Որ թվում է՝ շուրթդ բացես՝
Վարդի բուրմունք կտարածես,
Որ թվում է՝ աչքդ բանաս՝
Կյանքը լույսով կլվանաս,
Որ թվում է՝ ձեռքդ մեկնես՝
Վարդ ու մեխակ պիտի երկնես:

Որ թվում է... ու թվալով
Ձյունն է գնում մոթմոթալով,
Գնում է, որ տաք շողերով
Երկինք ելնի փողփողելով,
Հետո նորից, որպես պաղ ձյուն,
Որպես թախիծ ու կաղկանձյուն,
Թափվի կրկին գլխին հողի.—
Ձմեռն ինչպե՞ս մեզ կթողնի:

# ԴԵՐՁԱԿԸ

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

Մի թագավոր կորցրել էր իր գաղափարը: Ինքն էր այդպես ասում.

– Ես կորցրել եմ իմ գաղափարը:

Շրջում էր տերության մեջ, նայում մարդկանց, նրանց գործը, արարքները, և ոչ մի իմաստ չէր տեսնում այդ ամենի մեջ: Ապա փակվում էր պալատում, միայն լուսամուտից էր նայում աշխարհին ու դարձյալ իր գոյության իմաստը ոչնչում չէր տեսնում:

Բայց ի՞նչ թագավոր, եթե կորքը չի հավաքում, պատերազմներ չի մղում, որպեսզի գնդապետները գեներալ դառնալու հնարավորություն ունենան, գեներալները՝ մարշալներ և մարշալները՝ գեներալիսիմուսներ: Ի՞նչ թագավոր, եթե հակառակորդներին չի գլխատում, պալատականներին շնորհներ չի բաշխում: Ի՞նչն էր պատճառը, չէր հասկացվում:

Հավաքվեցին ամեն ծայրից գիտուն մարդիկ՝ փիլիսոփա, հոգեբույժ, ակնաբույժ, քննեցին բոլոր կողմերից, բայց ոչ մի պատճառ չգտան, թագավորը պղպջակի պես առողջ էր: Եվ անընդհատ ասում էր.

– Մի՞թե չեք հասկանում, ես կորցրել եմ իմ գաղափարը:

– Ո՛չ, չէինք հասկանում:

Մարդիկ սկսեցին տրտնջալ.

– Սա ի՞նչ երկիր է, ո՛չ տեր կա, ո՛չ տիրակալ:

Ստեղծեցին պառլամենտ: Պալատը բողոքեց, կռվեց, բայց ստիպված էր հաշտվել: Իսկ թագավորը լրիվ անտարբեր էր, միայն պալատական դերձակի հետ էր ընկերություն անում, օրերով նրա արհեստանոցից դուրս չէր գալիս:

Որոշ ժամանակ անց՝ պառլամենտը ընտրեց վարչապետ: Պալատը կրկին բողոքեց, կռվեց, թե.

– Եթե տերության մեջ կա թագավոր, վարչապետն ինչի՞ համար է:

Վարչապետն ասաց.

– Ձեր թագավորը կորցրել է իր գաղափարը:

Որոշ պալատականներ լքեցին պալատը, գնացին նոր վարչապետին ծառայելու: Իսկ թագավորը իր տաքատի տոտերն էր կրծում, ամեն ինչի նայում անտարբերությամբ:

Շուտով պառլամենտում սկսվեցին նշանակումները, վարչապետն իրեն օգնականներ նշանակեց, պաշտոններ բաժանեց սրան ու նրան, և այսպես երկիրը ղեկավարում էր:

Պալատականներից մի մասը ևս լքեց թագավորին և գնաց պաշտոններ ստանալու: Իսկ թագավորը ծրնոտն արագ-արագ շարժելով կարի մեքենայի նման՝ ատամներով փաղում էր իր թագավորական պգեստի կարի կիգկագներով և թե ինչ էր կատարվում տերության մեջ՝ ուշադրություն չէր դարձնում:

Դերձակը խմաստուն, հեռատես ու ծանրակշիռ մարդ էր, ասաց.



— Բերեք զանգատուփը բացենք, տեսնենք ի՞նչ կա մեր թագավորի գլխում:

Նա երբեք խլուր բաներ չէր ասում, այդպիսի մարդ էր դերձակը, մանավանդ շատերին էր հետաքրքրում, թե ի՞նչ կա թագավորի գլխում:

Բերին թագավորի զանգատուփը բացեցին և ներս նայեցին: Թե ինչ կար դերձակի մտքում՝ հայտնի չէր, բայց թագավորի գլխում մի մաքոք գտան՝ թելը վրան փաթաթված, մի ասեղ և մի մատնոց:

Զանգատուփը կրկին փակեցին և տեսածի մասին, որպես պետական խորը գաղտնիք, պալատականները լուռ մնացին:

Որոշ ժամանակ անց, որոշ պալատականներ ևս լքեցին թագավորին և գնացին պաշտոնավարելու: Անգամ թագավորական դրանիկ զորքը լքեց ու գնաց ծառայելու կառավարական բանակում:

Դերձակն էլ գնաց, քաղաքում արհեստանոց հիմնադրելով՝ քաղաքացիների համար զգեստներ էր կարում: Երկրում կյանքը, ըստ երևույթին, եռում էր: Բոլորը ձանձրացան անգործությունից, լքեցին իրենց տիրակալին ու գնացին: Մնացել էին միայն մի բուռ մարդիկ ու թագավորին մինչև կյանքի վերջը նվիրված թիկնապահները:

Այդ ժամանակ թագավորը լքեց իրեն հավատարիմ վերջին մարդկանց և գնաց քաղաք, գտավ դերձակին, մտավ նրա արհեստանոցը, խնդրեց մկրատ, ասեղ, արդուկ, և դերձակություն էր անում, ժողովրդի համար արքայական զգեստներ էր կարում: Ու երջանիկ էր, որովհետև գտել էր իր գաղափարը:

Ինքն էր այդպես ասում.

— Ես գտել եմ իմ գաղափարը:

## ԵՐԲ ԱՉՔ ԵՄ ԹԱՐԹՈՒՄ

ԴԱՆԻԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ամեն առավոտ, երբ աչք եմ բացում,
Տեսնում եմ արդեն մեր գյուղի դիմաց
Հողի հետ չոփն կռիվ է մղում
Հայրս վաղորդյան լույսով արթնացած:

Նայում եմ մորս՝ թոնիրն է վառում,
Նա մեր թոնիրի ծուխն է հարատև,
Մեր հայկականը՝ հինավուրց ու նոր,
Հինավուրց ու նոր հավատը նաև:

Մայրս երգելով ալյուր է մաղում,
Թեև հյուսքերն են արծաթվել այնքան.
Նրա ձեռքերից բուրմունքն է շաղվում՝
Մեր օրվա հացի և սուրբ մայրության:

Ամեն առավոտ, երբ ես նայում եմ
Մեր հին օջախին մի տաք հայացքով,
Հույսերիս կանաչ արևն է ժպտում
Մորս օրհնությամբ, հորս քրտինքով:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

## ԳԱՐՆԱՆԱՄՈՒՏ

ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆ

Ժանյակի նման
աստղոտ երկինքը
փռվել է դաշտին,
ձնծաղիկները հողի բացվածքով
լողում են դեպի գիրկը աստղերի:

Գիշերվա մտքում
ձնակույտերը շաքարի նման
հալվում են դանդաղ,
մանուշակները քնել են խաղաղ
շերտերում հողի:

Դեռ տերևների ուրվագծերը
ձուլված են հողին,
և արմատների հյուսմից դանդաղ
հողը չի դարձել
հեղուկ ու կանաչ:

Դեռ ծաղիկները ծիրանի ծառի
աստղիկների պես
չեն բոցավառվել ճյուղերի վրա,
և փեթակներում բողբոջ չի տվել
ոսկե բզզոցը մեղվապարսերի:

Ժանյակի նման
աստղոտ երկինքը
փռվել է դաշտին,
արմատների տակ լուռ բոցկլտում է
ներմակ երազը հեռու աստղերի:




## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

### ՋՈՒՐԸ ՇԱՏ ԿԱՐԵՎՈՐ ԲԱՆ Է, ԲԱՅՑ Ո՛Չ ԱՄԵՆ ՏԵՂ

Տեղատարափը չդադարեց երկրորդ, երրորդ, չորրորդ օրը: Իսկ հինգերորդ օրը, երբ արևը վերջապես շողաց, Վիտյան դուրս եկավ փողոց ու կարմանքից գոռաց.

— Ձյո՛ւն է, նայեցե՛ք, սարերում ձյո՛ւն է եկել:

Նարեկն ու Կատյան չհավատացին: Ո՞վ էր տեսել, որ հուլիսին, թեկուզ ծայր Սիբիրում, ձյուն տեղա: Բայց պարզվեց, որ Վիտյան չի կատակում: Բանավանը շրջապատող լեռները իրոք ծածկվել էին նոր եկած ձյան սպիտակ քողով, որը կայծկլտում էր արևի ճառագայթների տակ:

— Զարմանալի երկիր է այս Հայաստանը,— հոգոց հանեց Կատյան,— սարի գագաթին ձյուն է տեղում, իսկ մի քանի մետր ցած՝ ծաղկում են կակաչներն ու մանուշակները:

Երեք ընկերներն ուղղվեցին Նարեկենց տուն և փակվեցին նրա սենյակում:

— Որ էսպես գնա, մենք տասը տարում էլ «ամենափոքրը» չենք ստեղծի,— իր սենյակում հուզված ետ ու առաջ էր քայլում Նարեկը: «Ամենափոքր» կոչում էին նրանք այն մեքենայի մոդելը, որ պիտի պատրաստեին:— Միշտ ինչ-որ բան խանգարում է: Իսկ ներքևում գիտեք, չէ՞, ի՞նչ է տեղի ունենում:

— Ի՞նչ,— հարցրեց Կատյան:

— Տեսա՞ք, որ իմ հայրիկի կանխագուշակումները ճիշտ դուրս եկան: Ջրի հոսքը հենց ընդհատվել է, ընդերքը լցվել է թունավոր գազերով: Դա դեռ ոչինչ, այդ գազերը այնպես տաք են, որ թունելախորշում ջերմությունը հասնում է 50—60 աստիճանի:

— Դա նորություն չէ՛,— ձայնեց Կատյան,— այդ մասին հայրիկս էլ է պատմել ինձ: Բայց չէ՞ որ ընկեր Մանուկյանը Մոսկվայից հզոր օդափոխիչ պոմպեր է բերել:

— Հենց այդ է, է՛,— ընկերներին մոտեցավ Նարեկը:— Պոմպերը չեն օգնում: Աշխարհում դեռ չի ստեղծվել այնպիսի հզոր պոմպ, որ կարողանա դուրս մղել այդքան թունավոր գազ ու նման հեռավորության վրա փոխի թունելախորշի ջերմությունը:

Կատյան գլուխը բարձրացրեց ու նայեց Նարեկին: Նրա հայացքում ակնածանք կար:

— Որտեղի՞ց գիտես այդքան բան,— չհամբերեց նա:

— Գիշերը, երբ դուք հանգիստ քնած եք լինում, ես պպզում եմ հայրիկի առանձնասենյակի դռանը, հետևում և լսում նրա հեռախոսային կռույցները Երևանի, Մոսկվայի, ուրիշ քաղաքների հետ: Ես գիտեմ, որ դա տգեղ է,— արդարացավ նա,— բայց ուրիշ ելք չունեմ, մեր գործն է պահանջում:

Կատյան նորից բարձրացրեց հայացքը ու նորից հիացմունքով նայեց Նարեկին: Վիտյայի հայացքից դա չվրիպեց:

— Սիրելի՛ս,— ներողամիտ ժպիտով Նարեկի կողմը շրջվեց նա,— երևում է, մոռացկոտ ես:

— Ի՞նչ եմ մոռացել,— անակնկալի եկավ Նարեկը:

— Քեզ հայտնի չէ՞ շոգ տեղում աշխատելու հորս առաջարկած միջոցը: Դրա համար գիտե՞ս նա քանի գիշեր չի քնել,— ասաց Վիտյան ու, չգիտես ինչու, աչքի տակով նայեց Կատյային,— մինչև գտել է ելքը: Հո գիտե՞ս, որ հիմա թունելախորշի տարբեր անկյուններում, հայրիկիս առաջարկով, ջրմուղ պոմպեր են դրված, որոնք անընդհատ սառը ջուր են ցողում կիսամերկ թունելագործների վրա: Սկզբում, շատերը չէին համաձայնում, վախենում էին հիվանդանալուց, բայց հայրիկս ասաց, որ ինքն Ուրալում երկար ժամանակ այդպես է աշխատել ու քարի նման առողջ է:

Վիտյան վերջացրեց ու հաղթական շրջվեց դեպի պատուհանը: Դե, թող Կատյան շարունակի հիացած Նարեկին նայել:

Բայց Վիտյայի ուրախությունը կարճ տևեց:

— Հիմա դու ի՞նչ ես առաջարկում,— ձեռքերը կրծքին խաչեց Նարեկը,— չաշխատե՞նք «ամենափոքրի» վրա:

— Չէ՛, ո՞վ է ասում:

— Բա էլ ինչո՞ւ ես հեքիաթ պատմում,— սեղանի մոտ տեղավորվեց Նարեկը,— ո՞վ չգիտի, որ թունելագործները երեք օր է քո հայրիկի առաջարկած մեթոդով են աշխատում, բայց հայրիկդ էլ է ասում, որ դա վերջնական փրկություն չէ: Իսկ մենք մի շաբաթ է արդեն Երևանից բերել ենք անհրաժեշտ ամեն ինչ ու դեռ ոչինչ չենք արել:

Միջանցքում լսվեց ընկեր Մանուկյանի ոտնաձայնը: Երեք ընկերները վախեցած նայեցին ժամացույցին, հետո՝ իրար: Հերթափոխը շուտ է դուրս

Սկիզբը՝ 1976 թ. № 12 և 1977 թ. № № 1, 2-ում:



եկել թունելախորշից: Ուրեմն ներքևում էլի վատ բան է պատահել: Երեխաները մի պահ սսկվեցին, բայց միջանցքից ձայն չլսվեց: Նարեկը մոտեցավ դռանը, հետո չհամբերեց, դուրս ելավ: Վիտյան ու Կատյան հետևեցին նրան:

— Հայրի՛կ,— վախեցած հարցրեց Նարեկը,— ի՞նչ է պատահել:

— Ոչինչ...

— Բա ինչո՞ւ շուտ վերադարձար, երեք ժամ դեռ կա...

— Հանգի՛ստ թող ինձ,— կայրացավ ընկեր Մանուկյանը, բայց տեսնելով, որ տղան հյուրեր ունի, մեղմ տոնով շարունակեց.— Մի խոսքով, ջուրն է կտրվել, սառցի ու փոշու մեջ հնարավոր չէ աշխատել:

— Ինչպե՞ս թե ջուրն է կտրվել,— վարմացավ Կատյան,— ես քիչ առաջ խմեցի:

— Դա եղել է մի ժամ առաջ,— ներողամտորեն ժպտաց տեղամասի պետը,— իսկ հիմա ամբողջ բանավանում մի կաթիլ ջուր չկա: Ակունքից է կտրվել, լեռան գագաթից: Կամ տեղատարափն է խցանել խողովակները, կամ էլ ձյան պատճառով սառել է:

— Մի՞թե հնարավոր չէ գնալ ակը բացել,— չդիմացավ Վիտյան ու վախեցած նայեց ընկեր Մանուկյանին՝ հո շատ ծիծաղելի բան չասա՞ց:

Ընկեր Մանուկյանը նստեց բազմոցին ու հոգոց հանեց: Այս երևույթին շատ էր հոգնած:

— Հնարավոր է, իհարկե, Վի՛տոկ, հնարավոր է,— գլուխը բարձրացրեց նա,— բայց գիշերվա կեսին, քառասուն աստիճան ցրտի մեջ աշխատած բանվորներից ո՞ւմ ուղարկեմ լեռան գագաթը, ձյան ու մրրիկի մեջ: Ճամփան շատ վտանգավոր է: Անցյալ ամռանը մենք Նարեկի հետ բարձրացել ենք այդ սարերը: Մի խոսքով, ավելի լավ է այդ գործը ցերեկն անել, լույս աչքով:

Տեղամասի պետը գնաց, որ լվացվի, մոռացած, որ ջուր չկա:

Կատյան հուսահատ նայեց Վիտյային, հետո Նարեկին: Ու աչքերին չհավատաց: Նարեկի դեմքին խորամանկ ժպիտ էր խաղում...

(Շարունակելի)

# ԲՆԱՆԿԱՐ

ԱՆԱՀԻՏ ԱՆԱՆՅԱՆ

Լեռները պար են բռնել՝
Պարահանդես է,
Մութը՝ ճամփորդ անլապտեր
Եվ կարճատես է...

Անձրևը վալս է մաղում՝
Ծնկները բաց են,
Լուսնի հայացքն է շաղվում,
Ասես հարբած է...

Լուռ ննջում են քարերը
Նրանք ինչ ծա՛նր են,



Արտերի չեկ հյուսքերը
Քամին է սանրել...

Առուն ինչպե՞ս գիշերի՝
Ավազի տակ է,
Գորտը դաղձի փեշերին՝
Մանր ավազակ է...

Լուսինը հարս է անտուն՝
Ո՞վ է անիծել,
Լույսը նեղվում է բանտում՝
Դիմացիր քիչ էլ...

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

## ԴԱՓՆԻՆԵՐ ՀՆՁԵԼ, ԴԱՓՆԵՊՍԱԿ, ԴԱՓՆԻՆԵՐՈՎ ԶԱՐԴԱՐԵԼ, ԴԱՓՆԻՆԵՐԻ ՎՐԱ ՀԱՆԳՍՏԱՆԱԼ, ՄԻԼԹԻԱԴԵՍԻ ԴԱՓՆԻՆԵՐԸ, ՀԵՐՈՍՏՐԱՏԵՍԻ ԴԱՓՆԻՆԵՐԸ

*Ահա թե որքան շատ և տարբեր արտահայտություններ են իրենց գոյությամբ պարտական այն համեստ ծառին, որի տերևները մեր տնային տնտեսուհիները ամենայն հանգստությամբ գցում են կաթսայի մեջ՝ «համի համար»:*

*Հույները մի առասպել ունեն: Չկամենալով դառնալ Ապոլոնի կինը, հավերժահարս Դափնին նրանից փախչելիս դառնում է դափնի ծառ: Այդ ժամանակից ի վեր, մշտականաչ այդ բույսը դառնում է պոեզիայի ու արվեստի աստծու՝ Ապոլոնի ծառը: Դափնեճյուղեր ու դափնեպսակներ էին պարգևում սկզբում բանաստեղծական ու երաժշտական, իսկ հետո նաև սպորտային մրցություններում հաղթողներին: Հետագայում նույն մեծարանքին էին արժանանում նաև ռազմական սխրանքների համար: «Դափնիներ հնձել» նշանակում է հաղթանակներ տանել, «դափնիների վրա հանգստանալ»՝ հանգստանալ ձեռք բերածով, չձգտել հետագա հաջողության:*



*Երբ մեր թվարկությունից առաջ 490 թվականին կորավար Միլթիադեսը Մարաթոնի մոտ ջախջախեց պարսիկներին, մի ուրիշ հռչակավոր հույն, ինքնասեր Թեմիստոկլեսը, նախանձով ասաց. «Միլթիադեսի դափնիներն ինձ հանգիստ չեն տալիս»: Սա դարձել է թևավոր խոսք, որ այժմ գործածում են ուրիշ մարդկանց նկատմամբ ևս:*

*«Հերոստրատեսի դափնիներ» արտահայտությունը գործածվում է իբրև չարանենգ փառքի արտահայտություն: Ոմն Հերոստրատես, փառամոլ մի անձ, վճռում է հռչակվել, ինչ գնով էլ լինի, և այրում է Եփեսոսում գտնվող Արտեմիս աստվածուհու հիասքանչ տաճարը:*

*Արժե հիշեցնել, որ այժմ բոլորիս հայտնի «լաուրեատ» բառը լատիներեն նշանակում է «դափնիներով պսակված»:*



## ԱՌՅՈՒԾԻ ԲԱԺԻՆ

*Կռիլովի «Առյուծի որսը» առակում գայլանները միասին ջուրջկալ են անում և բռնում եղջերուին: Որսի մասնակիցները չորսն են՝ շունը, գայլը, աղվեսն ու առյուծը: Բայց որսը բաժանելիս առյուծը այսպես է բաշխում չորս մասը.*

«Այս մասն իմն է՝ ըստ պայմանի,
Սա էլ իմն է, առյուծինս՝ առանց վեճի,
Այս մասն իմն է՝ ամենից ուժեղինս,
Իսկ թե սրան մեկնումեկիդ ձեռքը դիպչի,
Ծունչը վրան չի վեր կենա նա իր տեղից»:

*Այս առակից երևում է, թե ինչ է նշանակում «առյուծի բաժին»: Ուրեմն այս արտահայտությունը գալիս է Ա. Ի. Կռիլովի առակի՞ց: Պարզվում է, որ ամենևին էլ ոչ: Համանման առակների հանդիպում ենք տառացիորեն բոլոր ժողովուրդների խոշոր առակագիրների մոտ: Առակների այդ շարքը սկսվում է Եզոպոսի «Առյուծը, աղվեսն ու էշը» առակով, ապա գալիս է Լաֆոնտենի «Հորթը, այծը, ոչխարն ու առյուծը» առակը և այնուհետև Տրեդյակովսկու «Առյուծը, հորթը, այծն ու ոչխարը», Սումարոկովի երկու առակները և Խեմնիցերի «Առյուծը բաժանում է» առակը:*

*Ի՞նչ է նշանակում սա: Ըստ երևույթին, տիրակալ և ուժեղ մարդկանց անարդարության թեման այնքան վաղուց և հիմնովին է կքաղեցրել աշխարհը, որ այն չի դադարում միշտ նոր լինել: «Առյուծի բաժին» արտահայտությունը շատ հին է և խորապես ժողովրդական:*

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*



# ԳԱՄՓՌԻ ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆԸ

*ԱԼԵՔՍԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ*

Արևոտ օր էր:

Հավերը հավաքվել էին աքլորի շուրջը: Նրա վրա էին դրել իրենց հույսը: Իսկ աքաղաղը այնպես էր փքվել հավերի վստահությունից, որ չէր կարողանում կարգին մտածել ու կարգին վճիռ ընդունել: Երբ սթափվեց, անհարմար զգաց, որ հավերի հետ կծկվել է բնում, և ոտ առ ոտ առաջ գնաց: Գնում էր ու աչքը պահում թախտին ննջող գամփռի կողմը: Գամփռը հանգիստ մրափում էր: Սիրտ առավ աքաղաղը, վստահ-վստահ տնկեց կատարն ու պոչը, պտտվեց բակով մեկ, թևով իր մոտ հրավիրեց հավերին: Սրանք հազիվ էին երկու քայլ հեռացել բնից, երբ գամփռը ցած թռավ թախտից, հափռեց բակում տնկված աքաղաղի փայլփլուն պոչը: Աքաղաղը սարսափահար ծլկեց հավաբույն, հավերն էլ հետը:

Պատշգամբում կանգնած փոքրիկ աղջիկն ու տղան կուշտ ծիծաղեցին պոչը կտրած աքաղաղի և նրա սարսափահար ընկերուհիների վրա: Հետո տղան վերցրեց ճաշամանի ամենամսոտ ոսկորը և սիրալիր նետեց գամփռի առջև: Գամփռը արհամարհանքով ծամռեց շրթունքը, տարավ բերեց ու թաթով այնպես հարվածեց ոսկորին, որ սա թռավ պատշգամբ, քիչ մնաց դիպչեր տղայի ճակատին:

Վախեցած տղայի վրա խոխոացին հավերն ու պոչը կտրած աքաղաղը:

Տղան չհուսահատվեց: Մատը դրեց ճակատին, մտածեց, մտածեց և գտավ, թե ինչ անել գամփռի հետ ընկերանալու համար: Վերցրեց պատշգամբում ընկած մահակը, սպառնալից դրեց ուսին և իջավ բակ:

Գամփռն սկսեց պոչը բարեկամաբար խաղացնել ու սիրալիր ժպտալ քաջ տղային: Տղան հպարտ-հպարտ մի քանի շրջան կատարեց բակում: Հետո համարձակ մոտեցավ գամփռին, ձեռքը դրեց նրա գլխին:

Հավերը ահից կուչ եկան, աքաղաղը կուչ եկավ:

Գամփռը աչքի տակով նայեց տղայի ուսին ճոճվող մահակին և ավելի բարեկամաբար խաղացրեց պոչը, ավելի սիրալիր ժպտաց: Տղան շոյեց գամփռի դունչը: Գամփռը հլու-հնազանդ տապկեց թախտին, աչքերը հեկ-հեկ թարթեց, շողոքորթ լիզեց տղայի ձեռքը: Տղան հրելով թախտից իջեցրեց գամփռին, ինքը նստեց նրա տեղը և պահանջեց թաթերը բարձրացնել: Գամփռը կանգնեց ետևի թաթերի վրա, տղան պահանջեց պարել, գամփռն սկսեց պարել,



հետո պառկեց մեջքի վրա, տնկեց թաթերը, գլուխկոնծի տվեց: Տղան պահանջեց, որ նա գնա ու խելոք վեր ընկնի թախտին: Գամփռը գնաց և խելոք վեր ընկավ թախտին, փակեց աչքերը:

Հավերը, աքաղաղը և բակի երեխաները հանգիստ շունչ քաշեցին և սկսեցին ծափահարել քաջ տղային: Տղան մի կողմ նետեց մահակը և հեծանիվով սկսեց պտտվել բակում:

Հազիվ էր մի պտույտ արել, երբ գամփռը բաց արեց մի աչքը: Հետո բաց արեց մյուս աչքը, չարչար մռռաց, ցած թռավ թախտից ու հափռեց քաջ-

# ՆՇԱՆԱՎՈՐ ԿԻՆ ՄԱԹԵՄԱՏԻԿՈՍՆԵՐԸ

*Մեր թվարկության IV—V դարերում հին Հունաստանի Ալեքսանդրիա քաղաքում ապրում էր առաջին կին մաթեմատիկոս ՀԻՊԱՏԻԱՆ, հայտնի Թեոն մաթեմատիկոսի դուստրը: Հիպատիան գեղեցիկ և հմայիչ կին լինելուց բացի, նաև շատ զարգացած և մեծ հետաքրքրությունների տեր անձնավորություն էր: Փիլիսոփա Պլատոնի հետևորդների՝ նեոպլատոնիկների դպրոցում նա դասավանդում էր մաթեմատիկա, աստղագիտություն և փիլիսոփայություն: Նաև հիանալի հռետոր էր, հայտնի էր պերճախոսությամբ և ակտիվորեն մասնակցում էր երկրի հասարակական կյանքին: Տղամարդ գիտնականների շրջապատում Հիպատիան իրեն պահում էր հավասարի պես՝ մեծագույն արժանապատվությամբ: Հնարավո՞ր էր արդյոք մտածել, որ այդ հիանալի կինը այդքան ողբերգական վախճան կունենա: Հիպատիան հեթանոս էր և մի օր, տուն վերադառնալիս, քրիստոնյա կատաղած ամբոխը հարձակվում է նրա սայլակառքի վրա, դուրս քաշում և... պատառոտում: Հիպատիային են պատկանում հեղուկի խտության, աստղագիտության մեջ՝ երկնային լուսատուների կոորդինատների որոշման սարքերի հայտնագործությունները և երկնային ոլորտի հարթագունդ քարտեզը, որով հնարավոր դարձավ հաշվարկել*



քաջ պտտվող տղայի շալվարը:

Սարսափահար տղան իր շալվարի կեսը թողեց գամփռի երախում: Վազեց դեպի մահակը, վերցրեց այն ու նորից բակ իջավ: Գամփռը նորից սիրալիր դարձավ,՝ թույլ տվեց նրան խաղալ բակում: Զանձրալի էր ծանր մահակը, բայց տղան միշտ ձեռքին էր պահում, մինչև որ գամփռին փոխարինեց մի ուրիշ շուն: Սրան հենց սկզբից երես չտվեցին, չբալմեցրին թախտին: Նա բարեկամաբար էր վերաբերվում բոլորին և բակում խաղալու համար այլևս մահակի կարիք չկար:

# ԹԵ ՈՐ...

ՍԵՐԳԵՅ ՄԻԽԱԼԿՈՎ

Դուրս ենք նայում պատուհանից.
Հորդ անձրև է և ճեղեղ:
Բակ ու պարտեզ ջուրն է պատել,
Ծամփա չկա ոչ մի տեղ:

Թե որ բոլոր այս լճերը
Իրար վրա մենք լցնենք,
Ոլոր-մոլոր վտակները
Գումարելով միացնենք,
Դառնանք չափենք խորությունը,
Մեծությունը՝ ծայրից ծայր,
Մի նոր Սև ծով մենք կունենանք
Արևի տակ այս պայծառ:
Թեկուզ ծովը մի քիչ խորն է,
Իսկ լճերը՝ քիչ ծանծաղ:

Թե որ բոլոր ամպիկները
Բերենք, կցենք մենք իրար,
Միածանի երկար մետրով
Դառնանք չափենք ծայրից ծայր,
Մենք կիմանանք, որ մեծ ամպին
Սահման չկա, ծայր չկա...

Անձրև կգա Մոսկվայում,
Իսկ Չիտայում ձյուն կգա:

Թե որ բոլոր կաթիլները
Իրար վրա հավաքենք,
Եվ քանդելով կոճի թելը՝
Հաստությունը թե չափենք,
Դա կլինի հսկա մի գունդ՝
Ե՛վ թափանցիկ, և՛ լազուր:
Այդքան մեծ ջուր դեռ չեն տեսել
Մարդիկ իրենց երազում:

*Թարգմ. Ն. Միքայելյանի*

աստղերի ծագումն ու մայրամուտը:

Հիպատիայից տասնչորս դար անց Ֆրանսիայում հայտնի դարձավ կին մաթեմատիկոս ՍՈՖԻ ԺԵՐՄԵՆԸ: Դեռ վաղ պատանեկության տարիներին նա հետաքրքրվեց մաթեմատիկայով և Նյուտոնի լատիներեն աշխատությունները բնագրից ուսումնասիրելու համար, կատարյալ տիրապետեց այդ հին և բարդ լեզվին: Սոֆի Ժերմենը հարթակների ծռման իր տեսության համար ստացավ ֆրանսիական գիտությունների ակադեմիայի մրցանակը: Նա մրցանակի արժանացած առաջին կին մաթեմատիկոսն էր:

Երկրորդ կին մաթեմատիկոսը, որ տարիներ անց նույն ակադեմիայի դափնեկիրը դարձավ, մեր հայրենակից ՍՈՖՅԱ ԿՈՎԱԼԵՎՍԿԱՅԱՆ էր: Կովալևսկայան երկրորդ և վերջին կին մաթեմատիկոսն էր, որ ժամանակի այդ մեծագույն մրցանակին արժանացավ: Բարձրագույն մաթեմատիկայի նրա՛ առաջին ուսուցիչն էր... իր սենյակի պատը, որին ծայրից ծայր փակցված էին հայտնի ռուս մաթեմատիկոս, պրոֆեսոր Օստրոգրադսկու դասախոսություններ ի դեղնած, բայց ընթեռնելի էջերը: Ինչպես ինքը՝ Կովալևսկայան էր ասում, նա մաթեմատիկոս դարձավ այդ «պատի թերթի» շնորհիվ: Եպակի օժտվածությունըապագա մեծ գիտնականին չօգնեց համալսարան ընդունվել. ցարական Ռուսաստանում կանայք այդ իրավունքը չունեին: Եվ ահա 19-ամյա աղջիկը թողնում է իր

# ՈՒՄ ԵՄ ՈՒԶՈՒՄ ՆՄԱՆՎԵԼ

Չկարծանաք, եթե ասեմ, որ ես բարու, մարդկայնության, ծով աշխատասիրության օրինակ եմ վերցնում մեր դպրոցի պահակ Նենուշ մայրիկից:

Ամեն առավոտ դպրոցի դուռը մեր առջև սիրով բացում է Նենուշ մայրիկը (բոլորը՝ մեծ թե փոքր, նրան այդպես են կոչում): Նա առաջինն է ժպտում մեզ և ամենքիս համար մի քաղցր խոսք ունի պահած: Քանի՜ սերունդ է Նենուշ մայրիկը կյանք ուղարկել, լավի համար ուրախացել, վատի համար տխրել. Շատ վիշտ է տեսել Նենուշ մայրիկը, կորցրել է միակ որդուն, բայց մնացել է բարի ու լավը: Նա ունի դաստիարակված և խելացի թոռներ, որոնցից Ռուզաննան ոսկե մեդալով է ավարտել մեր դպրոցը և այժմ սովորում է բժշկական ինստիտուտում:

Նենուշ մայրիկը միայն պահակություն չի անում, նրան շատ անգամ տեսնում ենք դպրոցը մաքրելիս: Դա էլ հասկանալի է. դպրոցը նրա հարազատ տունն է:

Մեր Նենուշ մայրիկը շատ է ընթերցում: Մենք հաճախ ենք խմբվում նրա շուրջը և կրուցում կարդացած գրքերի շուրջ: Նենուշ մայրիկը բազմաշնորհ է, նա մեզ սովորեցնում է հյուսել և ասում է, որ դա էլ շատ անհրաժեշտ է: Մենք բոլորս պաշտում ենք մեր սիրելի Նենուշ մայրիկին և ցանկանում, որ դեռ երկար մնա դպրոցում, երկար, երկար պահպանի իր աշխատունակությունն ու շարունակի լավի օրինակ տալ բոլորին:


ԱՆՆԱ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Հովհ. Թումանյանի անվ. դպր.

8-րդ դաս. աշ.




Շարադրության թեման իմ մեջ շատ հույզեր առաջացրեց: Ես հուզվեցի արտասվելու չափ: Թե ինչո՞ւ, հիմա կասեմ:

Ես լավ չեմ սովորում, կարող եմ, բայց չեմ աշխատում: Իմ այս վիճակը, տեսնում եմ, մեծ վիշտ է պատճառում և՛ ծնողներիս, և՛ ուսուցիչներիս: Նրանք շատ բան են արել ինձ համար, մտերմաբար կրուցել, օրինակներ բերել, բայց ես քիչ եմ ազդվել դրանցից: Եվ հիմա, երբ ես քիչ առաջ լսեցի իմ ուսուցչուհու բացատրական խոսքը թեմայի շուրջ, սիրտս լցվեց ցավով: Ինչքա՞ն շատ է լավը, որքա՞ն շատ են նրանք, ումից կարող եմ օրինակ վերցնել: Հենց թեկուզ մեր դասարանը: Ահա ես նայում եմ Երվանդին, Շահենին, իսկ աղջիկներին ամաչում եմ նայել: Ինձ թվում է, թե նրանք հասկանում են, գիտեն, թե ինչ մտքեր են ինձ տանջում: Ինչքան շատ բան կարող եմ սովորել իմ հորից ու մորից, ավագ եղբորից. նրանք բոլորն էլ լավն են, բարեխիղճ աշխատող, սիրում են մարդկանց: Հարևանները հարգում ու սիրում են նրանց, իսկ ինձ չեն էլ նկատում: Եվ ես որոշեցի՝ օրինակ վերցնել իմ միջավայրի լավից, գեղեցիկից, աշխատել նմանվել լավ մարդկանց՝ իմ ընկերներին, իմ լավ ուսուցիչներին, իմ բարի և աշխատասեր ծնողներին: Այդ ես կանեմ, ազնիվ խոսք եմ տալիս, և դուք այդ դեռ կտեսնեք:


ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Հովհ. Թումանյանի անվ. դպր.

8-րդ դաս. աշ.


---

հայրենիքը և մեկնում արտասահման՝ նշանավոր մաթեմատիկոս Կառլ Վեհերշտրասի մոտ ուսանելու: Վեհերշտրասը նրան թերահավատությամբ է ընդունում և «օծիքն ապտելու» համար մի քանի դժվար լուծելի խնդիրներ է առաջարկում: Կովալևսկայան փայլուն համձնում է «քննությունը»: Տարիներ անց Սոֆյա Կովալևսկայան դարձավ մեծ գիտնական, մաթեմատիկայի պրոֆեսոր, կարևորագույն հայտնագործությունների հեղինակ, բայց ո՛չ իր հայրենիքում, այլ հայրենիքից շատ հեռու, օտար Շվեդիայում: Կովալևսկայայի՝ անշարժ կետի շուրջը պինդ մարմնի պտտման հետազոտության մեծարժեքությունը հաշվի առնելով, ֆրանսիական գիտությունների ակադեմիան որոշեց մրցանակը 3000 ֆրանկից դարձնել 5000 ֆրանկ: Մի տարի անց Կովալևսկայան իր մյուս աշխատության համար ստացավ շվեդական գիտությունների ակադեմիայի մրցանակը: Մաթեմատիկական տրակտատներից բացի, Սոֆյա Կովալևսկայան գրում էր նաև վիպակներ, վեպեր և պիեսներ: Նա մահացավ 42 տարեկան հասակում, թոքերի բորբոքումից:

Հորտենզիա Լեպոտի անունը ընդմիշտ կապված է Հալլեի գիսաստղի հետ: Էդմունդ Հալլեն, Նյուտոնի մտերիմ բարեկամը, հաշվել էր 1682 թվականին երկնքում հայտնված գիսաստղի ուղեծիրը: Գիսաստղը իրավացիորեն ստացավ Հալլեի անունը: Անմիջապես Հալլեից հետո ֆրանսիացի մաթեմատիկոս Հորտենզիա Լեպոտին հաջողվեց հաշվարկել այդ գիսաստղի շրջապտույտի ժամանակամիջոցը: Պարզվեց, որ այն պետք է մեզ տեսանելի դառնա յուրաքանչյուր 76 տարի մեկ: Հաշվարկների համաձայն 1759 թվականին Հալլեի գիսաստղը նորից հայտնվեց: Այդ օրերին Ճապոնիայից Փարիզ էր բերվել չտեսնված գեղեցկությամբ անանուն մի ծաղիկ: Փարիզի գիտնականները այն Հորտենզիա անվանեցին:


Ա. ՍԱՍՈՒՐՅԱՆ

# ՀՆԴԿԱՑԻՆԵՐԸ

ՍԵՐԳԵՅ ՕՍՏՐՈՎՈՅ

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

*Մայրամուտին գնացքը մոտենում էր Խարկովին: Արևն արդեն բոլորովին ներքև էր սահել և անտառով կիսված դանդաղ հասնում էր հողին: Նրա ցածի կեսը հենվել էր ծառերին, իսկ վերևինը՝ դեռ թափանցող ու վառ էր ամպացած երկնքում: Ծառերը կարմիր նժույգների նման ցատկոտում էին հողաթմբի ետևում ու մեկ կորչում էին հեռվում, մեկ հայտնվում նորից:*

*— Հնդկացինե՛րը... Հնդկացինե՛րը... Ես հնդկացիներ եմ տեսնում...*

*— Դու այդ որտե՞ղ հնդկացիներ տեսար: Եվ ինչո՞ւ ես այդպես գոռում:*

*— Ահա նրանք, անտառից դուրս թռան: Նայեցե՛ք, նայեցե՛ք, իսկապե՞ս դուք նրանց չեք նկատում:*

*— Իսկ դու ծիծաղելի ես, տղա՛: Նրանք չէ՞ որ սովորական բարդիներ են: Աշնանը կարմրում են: Նրանք ի՞նչ հնդկացիներ են:*

*— Չէ՛, հնդկացիներ են: Ես տեսնում եմ, ես լավ եմ տեսնում:*

*Տղայի կողքին կանգնած տղամարդն ու կինը բարձր քրքջացին: Շոգեքարշը դեմ առավ մի ինչ-որ շատ կապույտ բանի և միանգամից կտրուկ կանգ առավ: Իսկ կառամատույցում, գնացքից իջնող բազմության մեջ դեռ երկար լսվում էր տղամարդու բարձրաձայն, որոտալից քրքիջը և կնոջ բարակ, ծղրտուն ծիծաղը:*

*Անցավ տասը տարի... Տղան դարձավ հասուն երիտասարդ: Մի օր նա ծանոթացավ մի աղջկա և հրապուրվեց առաջին հայացքից: Մի քանի օր անց նա աղջկան խնդրեց գալ գետափ: Նավակը, որի մեջ նստեցին, ամբողջովին նարնջագույն էր: Նրա երկու կողքերին գրված էր՝ «Մարինա»: Մեծ, կապույտ տառերով: Աղջիկը ոչինչ չասաց, բայց նրա ժպիտից տղան հասկացավ, որ դա նրան դուր եկավ:*

*Հետո նրանք երկար քայլեցին գետափով: Երբ արահետը, մի կողմ թեքվելով, տարավ նրանց սարերը, տղան հանկարծ, անսպասելի բղավեց.*

*— Մամոնտնե՛ր... Մամոնտնե՛ր... Ես մամոնտնե՛ր եմ տեսնում...*

*— Քեզ ի՞նչ պատահեց: Ի՞նչ մամոնտներ: Դրանք ուղղակի մեծ մոխրագույն քարեր են:*

*— Չէ՛, մամոնտներ են: Հիմա նրանք կփողհարեն...*

*— Դու այդ դիտմա՞մբ ես ասում: Որ ինձ ջղայնացնե՞ս: Քեզ դո՞ւր է գալիս ինձ ջղայնացնելը:*

*— Բայց դրանք իսկապես մամոնտներ են: Հիմա կփողհարեն և կսկսեն ներքև իջնել ջուր խմելու...*

*— Դու ինքդ ես մամոնտ: Ձանձրալի և հիմար մամոնտ:*

*Դա երիտասարդին ասված աղջկա վերջին խոսքերն էին: Ամբողջ կյանքի համար: Այլևս նրանք չհանդիպեցին: Նարնջագույն նավակը հետզհետե մոխրագույն դարձավ, իսկ տարիները՝ այդ արագավազ և անխոնջ վազողները, հասցրեցին քանի անգամ իրար փոխանցել էստաֆետային փայտիկը: Երիտասարդը դարձավ արդեն հասուն այր:*

*Մի անգամ իր փորձասենյակում նստած, նա մեկ էլ ասաց իր պետին.*

*— Իսկ դուք, Նիկոլա՛յ Նիկոլաևիչ, չե՞ք կարծում, որ ութը նման է իրար գրկած երկու խնձորի:*

*— Ի՞նչ, ի՞նչ:*

*— Իսկ երկուսը՝ փոքրիկ սև կարապի, որ աստղերին է նայում: Երեքը՝ կուչիկ եսասերի: Չորսը՝ կոտրված հենակի: Հինգը՝ ջուր տված մանգաղի:*

*— Լսե՛ք, դուք ինձ ինչի՞ տեղ եք դրել:*

*— Իսկ վեցը, Նիկոլա՛յ Նիկոլաևիչ, գլխի վրա կանգնած փակագիծ է հիշեցնում: Դուք այդպես չե՞ք կարծում:*

*Պետը չցանկացավ շարունակել այդ խոսակցությունը և շուռ եկավ: Շուռ եկավ երկար ժամանակով: Շատ տարիներով: Իսկ տարիները, այդ անխոնջ ու հավերժորեն վազողները, վազում էին ու վազում, երբեք չսայթաքելով իրենց ընթացքից:*

*Անցավ ևս երեսուն տարի:*

*Մռայլ աշնանային մի երեկո նա իրեն վատ զգաց: Նա հանկարծ ուզեց պառկել ու այլևս երբեք վեր չկենալ: Պատուհանի ետևում մայրամուտի ամբողջ լայնքով, վազում էին ծառերը կարմիր ձիերի նման և լուռ անհետանում հորիզոնից այն կողմ: Սենյակ մտած բժշկին թվաց, թե հիվանդը ինչ-որ բան է ուզում ասել: Եվ նա լսեց նրա վերջին խոսքերը: Բժիշկը և լուռ հարևանները: Տարօրինակ և բոլորին անհասկանալի այդ խոսքերը.*

*— Այնուամենայնիվ... դրանք... հնդկացիներ էին...*

Թարգմ. Տ. ՊՈՂՈՍՅԱՆԻ

«Պիոների» փոստից

# ԻՐ ՀՈՂԻ ՈՒ ՋՐԻՆ ՆՎԻՐՎԱԾ ՄԱՐԴԸ



Չնայած Գևորգը երեք դասարան ինձանից բարձր էր, բայց շատ մոտ ընկերներ էինք: Ամենուրեք միասին էինք լինում: Գուցե և այն պատճառով, որ դրկից-հարևաններ էինք: Դպրոցում տարածված էր այն կարծիքը, թե Գևորգը ծույլ է, Գևորգը մարդ չի դառնա, Գևորգից Պողոս-Պետրոս դուրս չի գա և այլն, և այլն: Ուսուցիչները հաճախ նախատում էին նրան, ասելով. լավ սովորիր, որպեսզի դառնաս այսինչ պատմաբանի, այնինչ լեզվաբանի արժանավոր փոխարինողը:

Չնայած որոշ առարկաներ՝ ֆիզիկա, քիմիա, երկրաչափություն, նա լավ էր սովորում, բայց նրա մասին ստեղծված այդ կարծիքն ուղեկցեց նրան մինչև դպրոցն ավարտելը:

— Մի՞թե տրակտորիստին, կոմբայնավարին, հողի աշխատավորին չի կարելի նմանվել,— մտովի հարցնում էր ինքն իրեն Գևորգը,— չէ՞ որ աշխարհը հացի վրա է, իսկ նրանք են հենց հաց արարում...

Գևորգի հայրը՝ Հունանը կոլտնտեսությունում անվանի մեխանիկատոր էր: Գևորգն ինքն էլ շատ էր սիրում մեխանիկատորի մասնագիտությունը: Եթե չընդհատեիր, ժամերով կխոսեր մեքենաների մասին, նրանց կառուցվածքի, բանող սարքերի, յուղի, հովացման, էլեկտրական սիստեմների և շատ ուրիշ բաների մասին:

Գևորգը նայում է հանդամասերին ու ինքն իրեն խոսում, թե այն թեքությունը լավ չեն վարել, այն մյուսը ոչ թե ուղղահայաց, այլ հորիզոնական պիտի վարեին, որպեսզի անձրևաջրերը չքանդեին: «Ես այդպես չէի վարի»: Հետաքրքրությամբ լսում էի նրան: Նա մեկ էլ կտրուկ շրջվում էր ու բարձրաձայն ասում ինձ.

— Գիտես ի՞նչ տրակտորներ են այս նորերը, դիր արագությունը երկրորդի վրա ու սարի կտրուկ վերելքը երգելով կբարձրանա...— Ու ոտքով հրում էր քարին, իբրև գազի ոտնակն է սեղմում, ձգում էր կողքի խոտի ընձյուղը, իբրև լծակն է ձգում:

Զարմանում էի, թե Գևորգը որտեղից այդքան բան գիտի: Հետո նկատեցի, որ նա գյուղատնտեսական մեքենաների վերաբերյալ շատ գրքեր է կարդում, վիճաբանում մեխանիկատորների հետ ու հաճախ հաղթում:

Մի անգամ ուսուցիչը Գևորգին կանչում է դաս պատմելու: Մի՜ ծիծաղ է անցնում դասարանով մեկ...

## ԱՌՈՒՆ

ԱՐԱՄ ՀԱԿՈԲՅԱՆ

Նվաղել էր աշնան շնչից.
Առուն հոգնած, առուն բարակ,
Ու վհատված ծվարել էր
Աշնան դեղին վերմակի տակ:

Նկ. ՄԱՐՏԻՆ ՏՈՆՈՅԱՆԻ

Ձմռան սառցե թևերի մեջ
Մտածում էր փոքրիկ առուն,
Մտածում էր՝ ծաղիկ ու ծառ
Իր փոխարեն ո՞վ է ջրում:

Մտածում էր... Մեկ էլ գարնան
Արեգակն է ժպտում վերից,
Առուն երգում է բարձրաձայն՝
Որ շունչ առած մեր սարերից:

Գեորգը թեթևակի հազում է ու «Մարդու արյունատար սիստեմը» թեմայի շուրջ մի քանի րոպե խոսելուց հետո ասում է.

— Ընկե՛ր Քաթանյան, մի հարց ինձ անհասկանալի է մնացել:

— Ասա՛, Գեո՛րգ, ի՞նչ հարց:

— Ես չգիտեմ մարդու օրգանի՞զմն է մեքենաների օրինակով պատրաստված, թե՞ մեքենաներն են մարդու օրգանիզմի օրինակով...

Նորից ծիծաղ է անցնում դասարանով: Երկար ծիծաղում է նաև ընկեր Քաթանյանը:

— Ախր ինչո՞ւ եք ծիծաղում,— վրդովված դիմում է Գեորգն ընկերներին,— ծիծաղելու բան չկա...

Ծիծաղը սաստկանում է...

— Բա որ ասում են՝ դու մարդ չես դառնա, ինչո՞ւ ես ոգևորում,— Գեորգին հեգնում են ընկերները:

— Դե շարունակի՛ր, շարունակի՛ր,— ասում է ուսուցիչը: Սակայն նա լուռ է մնում:

Գեորգի համար ամենահետաքրքիր ու հաճելի քառորդը, ինչպես ասում են, հինգերորդն էր: Ամառային արձակուրդներին նա հոր և մյուս մեխանիկատորների հետ էր, օգնում էր նրանց: Այնքան էր տարված դրանով, որ չստիպեին, չէր գնա նույնիսկ ճաշելու: Արդեն մի քանի օր էր, ինչ դասերը սկսվել էին: Դպրոցի դիրեկտորի հրամանով աշակերտները չարվել էին տողանի: Եկել էին ԼԿԵՄ շրջկոմից, կոլտնտեսության վարչությունից: Հանձնվեցին ԼԿԵՄ շրջկոմի պատվոգրերը, որոնցով պարգևատրվել էին մի խումբ աշակերտներ՝ դաշտային աշխատանքներին ակտիվորեն մասնակցելու համար: Առաջինը Գեորգ Սարգսյանի անունն էր: Բոլորը, կարծես, կգաստացած նայում էին նրան: Մի տևական ժպիտով նրան էր նայում ընկեր Քաթանյանը, իսկ Գեորգը կգաստ, հաղթողի հպարտությամբ կանգնել էր: Նրա մասին հանգամանորեն ու գովեստով խոսեց կոլտնտեսության նախագահը.

— Դաշտային աշխատանքներում առավել աչքի է ընկել Գեորգ Սարգսյանը, որը չնայած դեռ դպրոցական է, բայց համարձակ կարող եմ ասել, որ տիրապետում է ժամանակակից գյուղատնտեսական բարդ մեքենաներին, շատ աշխատասեր է, բանիմաց: Եթե ցանկանա, կգործուղենք սովորելու գյուղմեխանիկացիայի ուսումնարանում: Նա ապագա խոստացող տղա է:

Դպրոցում, այս խոսքերը Գեորգին արված առաջին քաջալերանքն էր: Այս խոսքերը նրա սրտից էին կարծես: Նրա երազանքն էլ այդ էր: Նա արտակարգ ուրախության մեջ էր, ինքն իրեն երգում, թռչկոտում էր, դարձել էր ավելի ժպտերես, բարի ու խելոք:

— Մեխանիկացիայի ուսումնարան եմ գնալու,— հայտնում էր ընկերներին, հարևաններին:

Գեորգն այդ տարի շատ բանով փոխվեց, համարյա հավասարապես սովորում էր բոլոր առարկաները:

Գեորգն ավարտեց դպրոցը, և իրականացավ նրա վաղեմի երազանքը. կոլտնտեսության գործուղմամբ ընդունվեց և հաջողությամբ ավարտեց գյուղմեխանիկացիայի ուսումնարանը: Այժմ կոլտնտեսությունում ճանաչված մեխանիկատոր է, սոցմրցության հաղթող:

Գեորգը գտել է ինքն իրեն: Գեորգը լավ մարդ է դառել, խելական մարդ, իր հող ու ջրին նվիրված մարդ:

ՄԱՆՈՒԿՅԱՆ ԴԱՎԻԹ

Նաիրիի շրջ., գ. [illegible], 8-րդ դաս.

Մեր մարզադպրոցները

## ՊԱՏԱՆԻ ՀՆԳԱՄԱՐՏԻԿՆԵՐԻ ՄԱՐԶԱԴՊՐՈՑԸ

Բացառիկ ու ինքնատիպ մարզաձևերից է հնգամարտը, ուր համադրվում են ուժն ու հմտությունը, ճարպկությունն ու համառությունը, սուր տեսողությունն ու կայծակնային կողմնորոշումը: Ինչպես հուշում է անվանումը, հնգամարտը կազմված է հինգ մարզաձևերից: Ապագա հնգամարտիկը պետք է լավ տիրապետի նժույգավարությանը, սուսերամարտին, անվրեպ հրաձիգ լինի և գերազանց վազող ու լողորդ: Այս վերջին մարզաձևը, թերևս, առաջինն ու ամենավճռական է հնգամարտում: Եթե հնգամարտով զբաղվողը լավ արդյունքի չհասավ այդ մարզաձևում, ապա պարապմունքներ շարունակելը այլևս իմաստ չի ունենա: Այդ նկատի ունենալով է, որ Երևանի պատանի հնգամարտիկների դպրոց ընդունվողների հետ երեք տարի միայն լող են պարապում: Ամեն տարի հարյուրավոր պատանիներ են ընդունվում լողի բաժին, իսկ տարեվերջին պարզվում է, որ նրանցից քչերն են ի վիճակի լինում պարապելու հնգամարտով: Սակայն այդ սաները չեն հրաժարվում մեծ սպորտից. պարապմունքները շարունակում են այլ դպրոցներում, զբաղվում այլ մարզաձևերով: Քննություն բռնողները երկու տարի լողով զբաղվելուց հե-



տոր, ընդգրկվում են եռամարտի, ապա քառամարտի և վերջապես հնգամարտի խմբերում:

— Տարեցտարի ավելանում է հնգամարտով պարապողների թիվը: Այժմ միայն հնգամարտի խմբերում շուրջ 370 պատանիներ են ընդգրկված,— պատմում է մարզադպրոցի ուսմասվար, հանրապետության և սպորտդըպրոցի թեթև ատլետիկայի մարզիչ, ՍՍՀՄ սպորտի վարպետ Հենրիկ Ղուկասյանը:— Պատճառը երևի այն է, որ այժմ մեր մարզադըպրոցն ունի լավ հնարավորություններ, ապահովված է որակյալ մարզիչներով: 20 մարզիչներից երեքը ՀՍՍՀ վաստակավոր մարզիչներ են և գրեթե բոլորը ՍՍՀՄ սպորտի վարպետներ: Իսկ դըպրոցի դիրեկտորը՝ Իգոր Նովիկովը աշխարհի քառակի չեմպիոն է և նրա նախաձեռնությամբ է ստեղծվել դպրոցը:

Մարզադպրոցը երիտասարդ է, ընդամենը 14 տարեկան: Սակայն այդ կարճ ժամանակահատվածում այստեղ աճել են մոտ 70 ՍՍՀՄ սպորտի վարպետներ ու վարպետության թեկնածուներ և 500-ից ավելի կարգային մարզիկներ:

Անցյալ տարվա ամենախոշոր միջոցառումներից մեկը հնգամարտի միջազգային ավանդական մրցումներն էին, որին մասնակցեցին Ավստրիայի, Բուլղարիայի, Հունգարիայի, ՍՍՀՄ 3 հավաքական, Լենինգրադի, Ուկրաինայի և այլ հանրապետությունների թիմերը: Համառ ու անզիջում պայքարում մարզադպրոցի սաները մրցանակային երկրորդ տեղը գրավեցին: Այդ մեծ հաջողությունը պայմանավորված էր պատանի մարզիկներ Ա. Հովհաննիսյանի, Ա. Մանուկյանի, Մ. Ռաֆայելյանի, Ռ. Աղամյանի, Ռ. Վաղարշակյանի, Մ. Ղուկասյանի և ուրիշների փայլուն ելույթներով: Ի դեպ, Ռ. Վաղարշակյանը, 1974 թ. մայիսին անցկացված հնգամարտի հանրապետական առաջնությունում 5117 միավոր վաստակեց, որը մոտ 250 միավորով գերազանցում է ՍՍՀՄ սպորտի վարպետի նորման, բայց քանի որ նա պատանեկան հաշվարկով էր մասնակցում մրցումներին, դրա համար էլ բավարարվեց թեկնածուի կոչումով և դարձավ հանրապետության չեմպիոն:

Պատանի հնգամարտիկները մարզական հարուստ ավարով վերադարձան տարբեր սպորտընկերությունների գծով Տալլինում, Լվովում, Խարկովում անցկացված մրցումներից, իսկ թիմային հաշվարկում նորից մրցանակային տեղեր գրավեցին:

Մարզադպրոցում լուրջ ուշադրություն է դարձվում նաև պատանիների ուսման ու առաջադիմության հարցերին: Դպրոցում գործում է ծնողական խորհուրդ, որը հետևում է պատանի մարզիկների առաջադիմությանը, անհրաժեշտության դեպքում օգնում են մնացողներին:

Պատանի հնգամարտիկներին խրախուսելու նպատակով, դըպրոցական բոլոր արձակուրդներին սպորտում և ուսման մեջ լավ արդյունքների հասած մոտ 100 երեխաների ուսումնամարզական հավաքի են վերցնում դպրոցում, ուր նրանք ամբողջովին նվիրվում են իրենց նախասիրած մարզաձևին:

Դպրոցի մարզիչները մեծ հույսեր են կապել իրենց սաների հետ: Շնորհալի պատանիները անկասկած կիրականացնեն մարզիչների սպասելիքները: Չէ՞ որ դրա համար բոլոր պայմանները կան: Մնում է միայն համառություն ու աշխատասիրություն, և դեպի չեմպիոնի կոչումը տանող սանդուղքների աստիճանները կըհաղթահարվեն:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*






Հին հունական առասպելներում բուն մշտական ուղեկիցն էր իմաստության աստվածուհի Միներվայի: Եվ եթե ձեզ ասեն, որ Ֆրանսիայի քաղաքներում և գյուղերում գոյություն ունեն «Բուի ակումբներ», հավանաբար կմտածեք, որ այդ ակումբներում դժվար խնդիրներ ու հանելուկներ են լուծում: Սակայն կսխալվեք: Այդ ակումբներում (դրանց թիվը Ֆրանսիայում հասնում է մի քանի հազարի) համախմբվել են պատանի բնասերները՝ բնության պատանի բարեկամները:

Իսկ ինչո՞ւ են նրանք «Բուի ակումբ» կոչվում: Ֆրանսիայում եղել է մի այսպիսի դաժան սովորություն. գյուղացիները, մկներին վախեցնելու համար, շտեմարանների մուտքերին կենդանի բու են կախել: Քսան տարի առաջ, արձակուրդների ժամանակ, Լոտ դեպարտամենտի մի խումբ դպրոցականներ որոշում




*ՍՈՍ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Նկ. ԱԼԻԿ ՍԻՄՈՆՅԱՆԻ*

Հայաստանը շատ հարուստ է տարբեր կարդաքարերի հանքավայրերով, որոնցից մի քանիսը եզակի են: Դրանք, իհարկե, թանկարժեք քարեր չեն ալմաստների և կմրուխտների նման, բայց գեղեցիկ են ու ինքնատիպ՝ գույների բազմազանությամբ և խաղով: Դեռ երկու-երեք հազարամյակ առաջ ագաթներից, օբսիդիաններից և յաշմաներից պատրաստվել են բազմազան զարդեր: Ամեն ժամանակաշրջանի համար բնորոշ է եղել քարերի մշակման, ձևավորման ուրույն եղանակ: Եզակի են քարացած փայտի հանքավայրերը Շամշադինի շրջանի Ղրղի գյուղի և Ամասիայի շրջանի Սարալանջ գյուղի մոտակայքում: Քարացած փայտն իրենից ներկայացնում է ծառի կառուցվածքը իր բոլոր մանրամասնություններով պահպանած մի բրածո, ուր օրգանական նյութը ներծծվել և տեղակալվել է երկրի ընդերքից եկող տաք լուծույթներով՝ թթվածնի բացակայության պայմաններում: Լուծույթների գլխավոր բաղադրյալը ավազահողի միացությունն է թթվածնի հետ, կամ սիլիցիումի օքսիդը: Այս պրոցեսի ընթացքում փայտը ձեռք է բերում այլևայլ գունավորումներ՝ մոխրագույն, գորշ, երկնագույն երանգներ, կարդաքարերին հատուկ անհրաժեշտ կարծրություն և բազառիկ ᵔ՝ գեղեցկություն:



են փրկել մի այդպիսի բուի: Բուն այն վիճակում էր, որ թվում էր, նրան փրկել անկարելի է: Սակայն երեխաների համբերատարությունն ու համառությունը պսակվեց հաջողությամբ: Բուն առողջացավ, մտերմացավ իր փրկարարների հետ և ընդմիշտ մնաց նրանց մոտ: Այս պատմությունը տարածվեց Ֆրանսիայով մեկ, և ամենուրեք սկսեցին առաջանալ «Բուի ակումբներ»:

Ի միջի այլոց, ֆրանսերեն «սե շուետ» (սա բու է) արտահայտությունը նաև հիացմունք, հավանություն է նշանակում և հայերեն կինչի «հրաշալի է»: «Սե շուետ»,— ասում են՝ ֆրանսիացի պատանիներին՝ բնության բարեկամներին: Նրանք հրատարակում են «Բու» անունով ամսագիր, ցուցահանդեսներ են կազմակերպում, և երբ հարկ է լինում, օգնության են հասնում կենդանիներին: Եթե դու սիրում ես կենդանիներին, ապա կարող ես մտերմանալ Ֆրանսիայում ապրող շատ պատանիների հետ, որոնք նույնպես սիրում ու պաշտպանում են կենդանիներին: Եթե դու պատմես նրանց քո և ընկերներիդ մասին, այն մասին, թե ինչպես են սովետական երեխաները պահպանում և պաշտպանում բնությունը, քո նոր բարեկամներն անպայման կբացականչեն.- «սե շուետ»:




*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*








Ստացվում է փայտի կառուցվածքով և գեղեցկությամբ, կվարցի կարծրությամբ կայծքար, որից պատրաստում են վարդեր՝ հուլունքներ, մեդալիոններ, ճարմանդներ, կոճակներ, մատանու ակ և այլն: Երևանի համալսարանի երկրաբանական ֆակուլտետի սրահում ցուցադրված է քարացած փայտից հավաքած մի ամբողջ ծառ:

Միության մեջ և նրա սահմաններից դուրս հայտնի են Իջևանի շրջանի Սևքարի և Սարիգյուղի ագաթները: Երբ արտաքուստ համեստ, կլոր գետաքարը ջարդում ենք, անսպասելիորեն բացվում է քարային մի չքնաղ գեղեցկություն, նրբաշերտ ագաթ, որի գծերը երբեք չեն կրկնվում: Ամեն անգամ դիտողը զարմանում է այս կատարյալ «հրաշքի» վրա, թվում է, թե ամենակարող բնությունն այստեղ էլ մտածված կերպով նկարել է, ստեղծագործել այս պատկերները: Հաճախ ագաթները շերտավոր են լինում, առաջին շերտը մամռավոր ագաթն է՝ կանաչ գույնի և, ինչպես կարելի է դատել անունից, շատ նման է մամուռի, երկրորդը՝ սպիտակ կամ կաթնագույն նրբաշերտ ագաթն է, ապա երկնագույնը, կապտավուն սապֆիրինը, իսկ կենտրոնին ավելի մոտիկ փայլփլում են ամետիստի մանուշակագույն բյուրեղները: Ասվածից երևում է, որ ագաթը կոնցենտրիկ կառուցվածք ունի և կենտրոնը երբեմն լինում է դատարկ: Այս դեպքում, երբ դեռ չջարդված գետաքարը սկսում ենք թափահարել, լսվում է մի ձայն՝ նման ջրով կիսալցված անոթը թափահարելիս լսվող ձայնին: Ագաթների առաջացումը նույնպես կապված է ընդերքից երկրի կեղևի ճեղքերով վեր բարձրացող տաք լուծույթների աստիճանական սառեցման հետ: Արագ սառչող մասերը առաջացնում են շերտավոր ագաթ, իսկ ավելի դանդաղ սառչող մասերը հասցնում են բյուրեղանալ և դառնալ ամետիստ:

Ագաթների օգտագործումը, որպես զարդաքարեր, հանրահայտ է, բայց սրանք օգտագործվում են նաև որպես բարձրարժեք տեխնիկական քարեր: Անփոխարինելի են ագաթից պատրաստված մեծ կարծրություն և մաքրություն պահանջող կանայան քիմիական անոթները:

Հայաստանում կան նաև յաշմաների մի քանի հանքավայրեր, որոնցից ամենախոշորներն են Կալինինոյի շրջանի Պետրովկա և Շահնազար գյուղերի մոտ գտնվողները: Այս կարմրավուն գորշ քարերը օգտագործվել են որպես զարդաքարեր դեռ հազարամյակներ առաջ: Վերջին տարիներին Արթիկի նշանավոր Հառիճի վանքի դիմաց տուֆային 8-րդ հանքի շահագործման ժամանակ հայտնաբերվեցին 2000—2500 տարվա հնություն ունեցող գերեզմաններ, որոնց մեջ բազմաթիվ այլ առարկաների թվում, գտնվեցին կարմիր յաշմայից պատրաստված հուլունքներ: Դրանք այնքան նուրբ էին պատրաստված, այնքան վարպետորեն մշակված, որ նույնիսկ այսօր, տեխնիկայի մեր դարում, զարմանք են պատճառում:

Մեծ հարստություն են ներկայացնում հանրապետության համար բոլորիս լավ ծանոթ օբսիդիանները, կամ ինչպես ժողովուրդն է ասում՝ «սատանի եղունգը»: Բազմազան են օբսիդիանի օգտագործման ոլորտները: Օբսիդիանը հատուկ վերամշակումից հետո դառնում է թեթև բետոնների անփոխարինելի բաղադրիչ: Օբսիդիանը բարձրորակ բյուրեղապակի ստանալու անսպառ հումք է և վերջապես նրա մի քանի տեսակները հրաշալի զարդաքարեր են:

Արծաթավուն օբսիդիանը օգտագործվում է ակնաքարեր պատրաստելու համար: Այս քարերը տարբեր հարթություններից լույսը անդրադարձնում են տարբեր ձևով, և այս հանգամանքը քարի մեջ ստեղծում է գույների գեղեցիկ խաղ: Տարբեր անկյուններից նայելիս քարը ձեռք է բերում տարբեր գույներ:

Բացառիկ գեղեցիկ են Արտենիի օբսիդիանները,



## ՁՆԾԱՂԻԿԸ

*ՆՈՐԱՅՐ ՍԱՐԳՍՅԱՆ*

Մի աղջիկ է եղել խենթ,
Չարաճճի, կամակոր,
Վազվզել է քամու հետ,
Երազել է նախշուն շոր...
Դրա համար մի անգամ
Աղջիկը այդ ոսկեծամ
Ոտաբոբիկ, ծունկը՝ բաց
Արցունքոտված, աչքը՝ թաց,
Փախել, ընկել է սարեր,
Հանդեր, ձորեր ու քարեր,
Անտառածածկ տափերում,
Առվի ժեռոտ ափերում
Անվերջ զգեստ է փնտրել
Ու ձյուների մեջ խրվել,
Մտել, քնել է ձյան տակ,
Այնտեղ փափուկ էր ու տաք:
Հետո մի օր հանդերում
Նրան գտնում են մարդիկ,
Ձյան տակից վեր էր ելնում՝
Դարձած կապույտ ձնծաղիկ:
Եվ այդ օրից մինչ հիմա,
Ու դեռ օրերը գալիք,
Մեզ միշտ հյուր է գալու նա,
Որպես քնքուշ մի ծաղիկ:

*Նկ. ՀՐԱՉՅԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ*

որոնց բարակ, 2—3 մմ հաստությամբ կտրված սալիկներում կարելի է գտնել ամենաֆանտաստիկ պատկերներ: Սրանք գույների համադրմամբ, աստիճանական կամ անսպասելի անցումներով հիշեցնում են Վրուբելի նկարները: Մերթ թվում է, թե անտառների աստվածը, առեղծվածային Պանն է ժպտում, մերթ էլ մեզ է նայում թափառող ու թախծոտ հայացքով նշանավոր Դևը: Երբեմն էլ միֆական պատկերներ են երևում: Բրեկչիանման, կամ այսպես կոչված, «խընձորային» օբսիդիաններն արդեն ուրիշ հմայք ունեն և հիշեցնում են իրենց անունը: Օբսիդիանները երիտասարդ հրաբխային գործունեության արդյունք են:

Եթե հանրապետությունը հարուստ է օբսիդիաններով և նրա պաշարները գործնականորեն անսպառ են, ապա մարմարային օնիքս կոչվող կարդաքարերի պաշարները սահմանափակ են: Այս հանգամանքը պայմանավորված է նրանց առաջացմամբ:

Օնիքսները տաք հանքային աղբյուրների նըստվածքներ են, դրանց գործունեության հետևանք: Երբ հանքային ջրերը երկրի մակերես են դուրս գալիս, կորցնում են իրենց ճնշումը և ածխաթթու գազը, որից խախտվում է ֆիզիկա-քիմիական հավասարակշռությունը, և ջրերից անջատվում է կալցիումի կարբոնատը օնիքսի, արագոնիտի կամ էլ տրավերտինի ձևով: Այս երեք տարբերակներից ամենաարժեքավորը օնիքսն է: Սրանք, իհարկե, շատ երիտասարդ ապառներ են և հաճախ առաջանում են մեր աչքի առաջ: Այսպես, օրինակ, Հանքավանի տաք հանքային աղբյուրների մոտ այժմ էլ առաջանում է օնիքս՝ մեղրագույն, երբեմն կանաչավուն երանգով, սպիտակափառ, որից պատրաստված գավաթները, ծաղկամանները և այլ իրերը բարձր են գնահատվում: Այս ապառներով են երեսպատված Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի շքամուտքի սրահի սյուները: Ցավոք, հանքային ջրերի այս գոյացումները իրենց չափերով փոքր են:

Օնիքսների քիմիական կազմությունն ունեն մարմարները, բայց տարբերվում են առաջացման պայմաններով և կառուցվածքով: Ընդհանրապես մարմարները երեսապատման նյութ են, բայց դրանց գեղեցիկ տարբերակները կարող են և կարդաքարեր լինել: Այդպիսին են Աղվերանի, Խոր-Վիրապի և Սուրենավանի մարմարները: Աղվերանի մարմարները նուրբ վարդագույն են, գորշ բծերով, իսկ Խոր-Վիրապինը՝ սև, սպիտակ բծերով: Սուրենավանի մարմարները սպիտակ են, բաց վարդագույն, բայց շատ ինքնատիպ գծանկարով:

Հիշատակված քարատեսակներով չեն ավարտվում Հայաստանի կարդաքարերի հանքավայրերը: Այստեղ նշեցինք միայն գլխավորները: Սրանց թվին են պատկանում նաև Կույբիշևի կոնգլոմերատները, Համզաչիմանի ամետիստները, Ախլբեկովի և Քաջարանի շրջանի մալախիտները՝ ազուրիտի հետ, տուրմալինի և նռնաքարի բազմաթիվ հանքավայրերը և այլն:

Մեր ժամանակներում մարդիկ չեն բավարարվում միայն բնության տվածով: Կիրովականի քիմիական կոմբինատում պատրաստվում է արհեստական ռուբին, ալեքսանդրիտ և մուտ տասը տեսակի ուրիշ կիսաթանկարժեք քարեր, որոնք չեն վիջում բնության տվածին: Ռուբինն օգտագործվում է ոչ միայն որպես կարդաքար: Հիմնականում կիրառվում է լազերների արտադրության մեջ: Երևանի ժամացույցի գործարանի արտադրած ժամացույցների քարերը նույնպես ստացվում են Կիրովականից:

Ինչպես տեսնում ենք, մեր հանրապետությունը հարուստ է կարդաքարերով, բայց երկրաբանները և նրանց ակտիվ օգնականները՝ պիոներները, որոնց աջակցությամբ շատ հանքավայրեր են հայտնաբերվել՝ դեռևս շատ անելիքներ ունեն:

## ՄԿՆԵՐԸ ԼՈՒՐՋ ԵՐԱԺՇՏՈՒԹՅԱՆ ԵՆ ԿՈՂՄՆԱԿԻՑ

*Ամերիկացի ամեն մի բարձր դասարանցի պարտավոր է ինքնուրույն հետազոտական աշխատանք կատարել: Էվոնդեյլ քաղաքի բնակիչ Գլեն Թեյլորն իր աշխատանքի համար բավականին անսովոր թեմա էր ընտրել. «Երաժշտության ազդեցությունը մկների վրա»: Ամեն օր (օրական ութ ժամ) նա մի մկան ստիպում էր ջութակ լսել: Պագանինիին և մյուս դասականներին լսելուց հետո, մուկն սկսեց լաբիրինթոսը հաղթահարել 20 վայրկյանում՝ ամբողջ տասնհինգ վայրկյանով շուտ քան այն ժամանակ, երբ նա դեռևս «երաժշտական կըրթություն» չուներ:*

*Իսկ նրա հարևանուհին դատապարտված էր առավոտից իրիկուն «ռոկ» ոճի ջազ լսել: Հետազոտության վերջում նա ճռճվելով, հազիվ-հազ կարողացավ դուրս ողալ լաբիրինթոսից:*



*ԼԵՎՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

# ԿԵՆԴԱՆԻ ԹԱԿԱՐԴՆԵՐ

## ԽՈՐՇԱԲՈՒՅՍ

Սա փոքրիկ, կարճ ու թելանման, ստորջրյա խոտաբույս է: Տերևների վրա կան փոքրիկ ուռուցքներ, որոնք ունեն ներսից փականներով փակվող, բեղիկներով շրջապատված անցքեր:

Երբ որևէ փոքրիկ կենդանի դիպչում է փականին, այն անմիջապես բացվում է, արագությամբ կլանում նրան և նորից փակվում: Ուռուցքի ներսում արտադրվող հեղուկն իր մեջ է լուծում միջատին և սննդարար հեղուկը ուռուցքի պատերի միջով ներծծվում է բույսի մեջ:

Խորշաբույսը վնասակար մոլախոտ է, ունի ջրից դուրս ցցված նարնջագույն ջերտերով ու կարմիր ելուստներով դեղին ծաղիկ: Այն հանդիպում է Արևելյան և Հարավարևելյան Ասիայում, Ավստրալիայի արևադարձային շրջաններում և Աֆրիկայում:



## ԱԼԴՐՈՎԱՆԴԱ

Գոյություն ունի մի ջրային գիշատիչ բույս, որը հայտնաբերելը բավական դժվար է: Այդ բույսը արմատներ չունի և անարգել լողում է ջրի վրա: Դրան անվանում են ալդրովանդա:

Տերևները բարակ են, բայց վերջավորությունները հանկարծակի հաստանում, դառնում են կլորավուն, բաժանվում կիսաշրջանակների: Տերևի յուրաքանչյուր մասնիկ ունի փոքրիկ մազիկներ: Երբ ջրային մանր կենդանիները լողալով դիպչում են այդ մազիկներին, տերևի երկու մասերն անմիջապես փակվում են՝ ստեղծելով թակարդ: Որսը մահանալուց հետո ներծծվում է բույսի մեջ՝ բույսի մարսող նյութի շնորհիվ:

Ալդրովանդայի ծաղիկներն սպիտակ են և մեկիկ-մեկիկ դուրս են գալիս տերևածոցերից, որոնք գտնվում են ջրի մակերեսին տարածված ցողունների վրա: Այս բույսը հազվադեպ է հանդիպում և մեծ հետաքրքրություն է ներկայացնում բուսաբանների համար:

Նրան կարելի է հանդիպել Արևմտյան Եվրոպայում, Ավստրալիայում, ՍՍՀՄ-ի եվրոպական մասում, Կովկասում, Հեռավոր արևելքում և Միջին Ասիայում: Լավ կլինի, որ արշավների ժամանակ փնտրեք և գտնեք ալդրովանդա: Հիշեք, որ նրան կարելի է հանդիպել նաև մեր հանրապետությունում:

## ՍԱԳԱԼԵԶՈՒ

Խոնավ վայրերում հանդիպում է մի փոքրիկ խոտաբույս: Նրա ծաղիկները մանուշակի են նման, իսկ տերևները կարծես հողի մակերեսին աստղաձև դասավորված լեզվակներ լինեն և իրենց վեր ծալված եզրերով այնքան նման են նավակի կամ սագի լեզվի, որ այդ պատճառով մարդիկ դրան անվանել են սագալեզու:

Սագալեզվի տերևները ծածկված են բազմաթիվ մանր, անզեն աչքի համար անտեսանելի սնկերով, որոնց արտադրած հեղուկը յուղի նման ծածկում է տերևի մակերեսը: Երբ տերևի վրա միջատ է կանգնում, տերևի եզրերն ինքնուրույն դեպի ներս են փաթաթվում և բռնում միջատին, տերևն սկսում է արտադրել թթու, միջատը լուծվում է և կեր դառնում սագալեզվին:



Սագալեզվի կարելի է հանդիպել Հարավարևելյան Ասիայում, Ավստրիայում, Արևմտյան Եվրոպայում, Նոր Զելանդիայում, Աֆրիկայում և Հարավային Ամերիկայում:

Սագալեզվի տերևահյութից կաթը մակարդվում է: Հյուսիսի բնակիչներն օգտագործում են սագալեզուն կաթը մակարդելու համար:

## ՆԵՊԵՆՏԵՍԱ
### (կամ վտանգավոր սափորներ)



Վտանգավոր սափորներ

Նեպենտեսա

Մերձարևադարձային խոնավ անտառներում աճում է մեծ ու լայն տերևներով նեպենտեսա փաթաթվող բույսը:

Տերևների եզրերի բեղիկներից կախված են արտակարգ գունեղ, հրապուրիչ հոտ արձակող սափորներ, որոնք հասնում են մինչև 30×12 սմ չափի:

Գույնով և հոտով հրապուրված միջատները, կանգնելով սափորի դեպի ներս ծռված եզրին, սայթաքում են և ընկնում սափորում գտնվող հեղուկի մեջ, որտեղ 5—8 ժամվա ընթացքում լուծվում են, վերածվելով սննդարար հեղուկի: Եթե միջատն ուժեղ է և հեղուկից դուրս պրծնելով, այնուամենայնիվ, փորձում է փախչել, նա նորից մատնվում է անհաջողության, որովհետև դեպի ներս ծռված սուր-սուր փշերն ու սափորը կափարիչի նման ծածկող տերևը անհնարին են դարձնում նրա փախուստը:

Աշխարհում գոյություն ունեն նեպենտեսայի շուրջ 70 տեսակներ, որոնք տարածված են Կալիմանտան և Սումատրա կղզիներում, Նոր Գվինեայում և Ավստրալիայում: Նեպենտեսայի շատ տեսակներ և հիբրիդներ հաջողությամբ աճեցվում են ջերմատնային պայմաններում:

Նեպենտեսան այնքան առատ որս է անում, որ դրանից հաճախ օգտվում են նաև թռչունները:

Լույս է տեսնում 1928 թվականից

№ 3 մարտ 1977 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝

ԵԿ. ՄԱՍԻՍ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՊԵՏՐՈՍՅԱՆ Թ., ՍԱՐԳՍՅԱՆ Լ. (պատասխանատու քարտուղար), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:
Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96

ՎՖ 05032: Պատվեր 244: Տպաքանակ՝ 55206: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 3/III 1977 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

